# ՏՈՆԱՀԱՆԴԵՍ

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Չէր բացվել դեռ խաժ աչքը արևի,
Զարթնեց Արագած պապը սարերի.
Զարթնեց ու տեսավ գետերն հերարձակ
Ցոլում են թովիչ ցոլքերով արծաթ:
Դաշտերն են ժպտում վարդ ու կակաչով,
Առվակներն անցնում անուշ կարկաչով:
Լեռները հսկա բռնել են շուրջպար,
Պարում են խրոխտ, հուժկու Սասնա պար,
Հովերը անտես հովհարներ դարձած՝
Շոյում են նրանց ճակատը կանաչ:
Սալյուտ են տալիս ամպերն հեռավոր,
Թնդում են նրանց ձայնից սար ու ձոր:
Ու ցողոտ-շաղոտ գրկում բնության
Շռայլ հանդեսն է բացվում մայիսյան...
Քիչ անց, արևն էլ ահա ճառագած՝
Ջերմ ողջույն տալով լեռանն Արագած,
Իջնում է շիկնած՝ սարերի ուսից,
Ասես ուշացած տոնահանդեսից:



# ԿՌՈՒՆԿՆԵՐԸ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Մայիսյան փողոցում
Ծաղկել են ծառերը,
Ծաղկել է քնքշաբույր եղրևանին:
Ժպտում են լամպերը,
Ժպտում են քարերը,
Եկել է գարունը Երևանի...
Նայում են երկնքից
Տուն դարձող կռունկները,
Նայում են զարմացած՝ Երևանին:
Որքա՜ն շա՜տ են հիմա
Վերամբարձ կռունկները
Կապույտ երկնքում Երևանի:



# ՍԻՐԵԼԻ ՊԱՏԱՆԻ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ

Ես շատ ուրախ եմ, որ իմ պատմվածքը առաջին անգամ թարգմանվել է հայերեն և դուք՝ արևավառ Հայաստանի երեխաներդ, այն կարդալու եք ձեր մայրենի լեզվով, որը միաժամանակ աշխարհի հնագույն լեզուներից մեկն է:

Ինձ՝ նախկին զինվորիս ու ծովայինիս, բախտ է վիճակվել լինելու շատ երկրներում ու մայր ցամաքներում, ինչպես նաև մեր անծայրածիր Միության ամենահեռավոր անկյուններում, բայց երբեք առիթ չի եղել Կովկասյան լեռներից այն կողմ անցնել: Չնայած դրան, ես լավ եմ պատկերացնում ձեր երկիրը: Հայաստանի ու նրա մայրաքաղաքի գեղեցկության մասին ինձ հաճախ պատմում է կինս, որը պատերազմի ժամանակ էվակուացվել է Երևան և բարձրագույն կրթություն ստացել պետական համալսարանում: Լեռնային Հայաստանը այնպիսի անջնջելի հետք է թողել նրա հոգում, որ նա մինչև հիմա էլ չի կարողանում մոռանալ ձեր լեզուն ու իր հայ ընկերներին: Իմ հայ ընկերներին չեմ կարողանում մոռանալ նաև ես: Նրանք մեր գնդում, ճիշտ է, շատ չէին, բայց աչքի էին ընկնում արտակարգ խիզախությամբ ու հնարամտությամբ: Դրա համար, չնայած ես վաղուց արդեն չեմ ծառայում ու հանել եմ համազգեստս, բայց որոշեցի իմ զինվորական լուսանկարը ուղարկել Երևան: Գուցե բանակային ընկերներս հիշեն ինձ ու մեր խզված կապը վերականգնվի: Նրանք վաղուց արդեն հայրիկներ ու պապիկներ պետք է դարձած լինեն, բայց ինձ թվում է, որ դեռ թերթում են ձեր հանդեսը կամ առանձին հաջողված նյութերը կարդում ձեզ համար: Բոլոր դեպքերում ես իմ հույսը դնում եմ երջանիկ պատահականության վրա: Ինձ ասացին, որ այս տարի լրանում է «Պիոներ» ամսագրի հիսունամյակը: Ես ուզում եմ ձեզ շնորհավորել այդ մեծ տոնի առթիվ ու ցանկանալ, որ դուք ձեր հանդեսի, ինչպես նաև գրքի ու գրականության հետ միշտ լավ բարեկամներ մնաք:

ԻԼՅԱ ԱՐԿԱՆ

Լենինգրադ




ԻԼՅԱ ՄԻԿՍՈՆ

Նրանք տուն էին վերադառնում: Մոսկվա: Այս անգամ՝ ընդմիշտ: Դժվար էր դրան հավատալ: Երկուսով էլ հոգնել էին գյուղից-գյուղ, խրճիթից-խրճիթ ձգվող անվերջանալի թափառումներից: Երեք տարում ամենաքիչը երկու մարզ ոտնատակ տված կլինեին: Ամռանը՝ դեռ ոչինչ, բայց ձմռանը ուրալյան սառնամանիքները ուղղակի մարդու շունչ էին կտրում: Չնայած դրան՝ ձմռանը հեշտ էր սահնակով իրերը տեղափոխել՝ մի երկու հնամաշ անկողին ու մայրիկի ծանր, քերծված կափարիչով կարի մեքենան: Նրանք ապրում էին սրա-նրա տանը, ու մայրիկը կարում, վերանորոգում էր տանտերերի, հարևանների հագուստները: Նրանք ստիպված էին քոչվորական կյանք վարել, որովհետև հարազատ տունը մնացել էր հեռվում՝ անտառների, գետերի ու դղրդացող կամուրջների մյուս կողմում:

Վարյան չէր կարողանում մոռանալ ժամապահներին, որոնք հսկում էին այդ կամուրջները: Նրանք երկար շինելներ ունեին, խոշոր հրացան ու ծանր, մետաղե գլխարկներ: Երբ Վարյան ու մայրիկը էվակուացվեցին, բոլորն ասում էին, որ գերմանացիները մոտ են Մոսկվային, և Վարյան ժամապահներին նայելով՝ մտածում էր, որ նրանք այդպես զգոն կանգնած են, որպեսզի թույլ չտան թշնամուն՝ դեպի Արևելք, իսկ յուրայիններին դեպի Արևմուտք շարժվել: Հո բոլորը չէի՞ն կարող իմանալ, որ այն արդեն օկուպացված է: Եվ իրոք, դեպի Արևելք շարժվում էին կանայք, երեխաներ ու ծերունիներ, իսկ հակառակ ուղղությամբ՝ զինվորների ու զինտեխնիկայի անվերջանալի էշելոններ: Հիմա, երբ Վարյան էլ մայրիկի հետ զինվորական էշելոնով Արևմուտք էր գնում (ասենք, Արևմուտք գնացող բոլոր գնացքները զինվորական էին, որովհետև ինչ էլ տանեին նրանք՝ տանկ, հրանոթ, բենզին, մթերք թե հագուստ՝ ճակատի համար էր), հիմա նա էլ արդեն գերմանացիներից չէր վախենում: Կարմիր բանակը նրանց շպրտել թշնամուն մինչև Արևելյան Պրուսիա, և բոլորն ասում էին, որ պատերազմը ուր որ է կավարտվի:

Զինկոմիսարիատի միջնորդի սպան կարողացավ մայրիկին ու Վարյային տեղավորել այն էշելոնում, որը պիտի հասներ Բելոռուսական ճակատ: Կենդանիներ տեղափոխող գնացքի ուղեկիցները այնքան էլ սիրով չընդունեցին հիվանդ կնոջն ու նրա փոքրիկ աղջկան: Նրանց տեղավորեցին ոչ թե ուղեկցողների տաքացվող վագոնում, այլ՝ կենդանիների հետ մեկտեղ, որոնցից մայր ու աղջիկ առանձնացված էին խոտի քառակուսի խրձերով: Այդ խրձերի մեջ էլ նրանք անկողին պատրաստեցին ու գիշերները, վերարկուից բացի, ծածկվում էին չոր խոտի հաստ շերտով: Արդեն ուշ աշուն էր ու առավոտները օդը արծաթին էր տալիս սառցե բյուրեղներից, իսկ փոքրիկ լճակների եզրերին փայլփլում էին առաջին սառույցի փխրուն շերտերը: Վագոնում ցուրտ էր ու խոնավ, մշտապես կենդանու մեզի ու գոմաղբի հոտ էր գալիս: Ցերեկները, իհարկե, կարելի էր բացել փայտյա պատուհանը, բայց դրանից վագոնը լցվում էր ծխով ու աչք մրմռացնող ածուխի փոշով: Ամբողջ ճանապարհին Վարյան ցած էր իջնում միայն մեծ կայարաններում, այն էլ՝ մետաղե թեյնիկով եռացրած ջուր բերելու համար, չնայած ամեն անգամ սարսափելի վախենում էր, որ գնացքից կուշանա, ու սիրտը ուժեղ խփում էր, երբ ստիպված էր լինում բազմաթիվ դուրս ցցված կոտոշների միջից նոր՝ վագոն բարձրանալ: Բացի այդ, ամեն կանգառի, ավագ ուղեկցող Եգորովը, ցուցադրաբար ատրճանակն ուղղելով, ստուգում էր վագոնները, և չնայած իրենց մոտ չէր բարձրանում, բայց վագոնի նեղ բացվածքից լսվում էր նրա ճղճղան ձայնը.

— Այստեղ բոլորը դեռ ո՞ղջ են,— նա երևի ավելի շատ կենդանիներին նկատի ուներ,— ուշադի՛ր եղեք, հա՛, ճակատ ենք տանում, կատակ չէ, յուրաքանչյուր կորած գլխի համար ռազմական տրիբունալ է հասնում:

Ուղևորության երրորդ օրը նրա գլուխը մի քիչ ավելի երկար մնաց վագոնի բացվածքի մեջ.

— Իսկ դուք, ինչպե՞ս եք, հո սոված չե՞ք մնում, ուտելու բան ունե՞ք:

Մայրը շնորհակալություն հայտնելով՝ հավաստիացրեց, որ իրենք ամենևին էլ քաղցած չեն, միայն ուզում են շուտ հասնել տուն: Այնուամենայնիվ, հաջորդ կայարանում Եգորովը մի բոքոն հաց ուղարկեց ու զինվորական ամանով կաթ: Ուտելիք բերող կինը ցրտից սրթսրթալով, ասաց.

— Լսի՛ր, մա՛յր, դու ամեն երեկո աղջկադ հինգերորդ վագո՛նը ուղարկիր, կովերն այնտեղ են, ես ձեզ թարմ կաթ կտամ:

Բայց այդպես էլ Վարյան գոնե մի անգամ չկարողացավ հինգերորդ վագոն գնալ: Եվ ահա թե ինչու...

Հերթական ճամփաբաժանում էշելոնը երկար կանգնեց: Մայր ու աղջիկ մեծ դժվարությամբ կարողացան կիսով չափ բացել վագոնի ծանր դուռը, և ներս խուժած սառը օդը իսկույն ցրեց գաղջ գոլորշու ճերմակ քուլաները: Վարյան վերարկուի մեջ փաթաթված՝ անհագ դուրս էր նայում: Եղյամապատ հեռախոսալարերը պսպղում էին առավոտվա աղջամուղջի մեջ, իսկ անսահման դաշտը կապտավուն գոլորշի էր արձակում: Հեռու հորիզոնում ուրվագծվում էր գորշ անտառը:

— Ինչ լա՜վ է,— ուզեց բացականչել Վարյան, բայց դեռ բերանը չէր բացել, երբ մի խոշոր մեծճակատ ցլիկ բարձր գերանների վրայից ցատկելով, հայտնվեց ներքևում: Նրա ոտքերը սայթաքեցին դեռ չպնդացած սառույցի վրա, բայց արագ ոտքի կանգնելով, թռչկոտեց դեպի մոտակա դաշտը: Մայրը դեռ չէր հասցրել ճչալ, երբ Վարյան արդեն ներքևում էր:

— Պարա՜նը,— ետևից հազիվ հասցրեց գոռալ մայրը,— պարա՜նը վերցրու:

— Պետք չէ՛,— ձեռքով արեց Վարյան,— ես ինքս:— Ու վազեց ցլիկի ետևից:

Բայց ցլիկը կարծես ուզում էր խաղալ աղջկա հետ: Նա հանգիստ կանգնած՝ ուշադիր նայում էր Վարյային, և բավական է, որ վերջինս շարժվեր տեղից, գլուխը թափահարելով մի քանի քայլ հեռու էր փախչում ու քարանում: Հետո կրկնվում էր նույնը: Վարյան փորձեց վազքով հասնել նրան, պարանը հեռվից վիզը գցել կամ ետևից աննկատ մոտենալով դեպի գնացք քշել, անօգուտ: Ցլիկը շատ համառ ու հաշվենկատ դուրս եկավ: Վարյայի լացը գալիս էր, բայց ոչ թե վախից, այլ ամոթից ու անզորության ցավից: Նա արդեն մի քանի անգամ ընկել էր, մի քանի անգամ քերծել թևն ու ծնկները: Հիմա չէր էլ մտածում գնացքից ուշանալու մասին, որն այնպես սարսափեցնում էր նրան, երբ կայարաններում իջնում էր եռացրած ջուր վերցնելու:

Հանկարծ մեկը գոռաց.

— Այս ի՞նչ է, ո՞վ է անասուններին բաց թողել:

Վարյան ետ շրջվեց: Եգորովն էր: Նա վազում էր վագոնների երկայնքով ու իր ճղճղան ձայնով սպառնում.

— Եթե հանցավորին բռնել եմ, տրիբունալ եմ քարշ տալու, ուղղակի՛ տրիբունալ:

Դռների մեջ հայտնվեց մայրը:

— Վա՛րենկա,— Եգորովի խոսքերը լսելով՝ վախեցած գոռաց նա և փորձեց իջնել աղջկան օգնելու: Իր հերթին դեպի Վարյան նետվեց նաև Եգորովը, բայց նույն պահին վագոնները դղրդոցով ցնցվեցին:

— Վա՜րենկա, Վա՜րյա,— վագոնից ցած կախված՝ սարսափից ճչաց մայրը, բայց Եգորովը մի ակնթարթ անց կողքին էր: Նա ետ հրեց ցած թռչել փորձող մորն ու ինքն էլ հազիվ նրա ետևից կարողացավ վագոն մտնել: Մայրը ամեն կերպ աշխատում էր դուրս պրծնել Եգորովի ձեռքերից, նրանք միմյանց ընդհատելով ինչ-որ բան էին գոռգոռում, բայց ոչինչ չէր լսվում: Առանց այն էլ գնացքը հազիվ էր նշմարվում ծխի մուգ, թանձր քուլաների մեջ: Եվ մինչև ծուխը կցրվեր, վագոններն էլ աստիճանաբար փոքրացան, աղոտացան ու ձուլվեցին հորիզոնին: Վարյան կանգնած էր մենակ ու դըժբախտ, և արցունքները անընդհատ դեմքից հոսելով, ծխից սևացած այտերին երկու բարակ, վարդագույն գիծ էին թողնում: Հանկարծ մեկը ցնցեց նրան: Վարյան վախեցած ետ շրջվեց: Խոշոր, լայնաճակատ գլուխը մեղավոր ցած կախած՝ կողքին կանգնել էր ցլիկը: Վարյան ներքուստ ատում էր նրան, բայց վերջինս, իհարկե, ոչինչ չէր զգում: Նա մինչև անգամ թույլ տվեց, որ Վարյան պարանը մի քանի անգամ պինդ փաթաթի վզին ու մյուս ծայրը ձեռքին պահած քարշ տա երկաթգծով: Անտառի մյուս կողմում երևում էին ինչ-որ մեծ քաղաքի ծխնելույզներ, բայց նրանց հասնելը ամենևին էլ այնպես հեշտ չէր,



ինչպես թվում էր սկզբում: Ճաշի ժամը վաղուց անցել էր, ու արևը մոտենում էր մայրամուտին, երբ Վարյան բազմաթիվ վագոնների ու ռակների մեջ խճողվելով, հայտնվեց կայարանում: Նա արդեն լաց չէր լինում, չնայած չորացած արցունքի հետքերը առաջվա պես փայլում էին դեմքին: Նա վախով ու անհամբերությամբ նայում էր սպասասրահի դժգույն կանանց, որոնք բեռների վրա նստած, գնացքի էին սպասում: Մայրը չկար: Ուրեմն Եգորովը նրան արդեն ռազմական տրիբունալ էր հանձնել: Վարյան մի պահ մտածեց ու որոշեց մոր ետևից ուղղակի տրիբունալ գնալ, դատավորներին ցույց տալու համար ամենամեծ հանցագործին, անառակ ցլիկին: Նա պարանը ձեռքում պինդ պահած, մարդկանցից հրհրվելով սկսեց կարդալ կայարանի ցուցանակները, բայց ոչ մի տեղ ռազմական տրիբունալ չէր գրված: Հանկարծ նրան կարմիր թևակապով մի զինվոր կանգնեցրեց:

— Դու ի՞նչ ես անում այստեղ այդ տեսքով,— հարցրեց նա ու անսպասելիորեն նույնիսկ կարծես ուրախացավ,— լսի՛ր, հո քո անունը Վարյա չէ՞:

— Այո՛,— գլխիկոր շշնջաց Վարյան ու սիրտը սեղմվեց մոտալուտ վտանգից:

— Հետևի՛ր ինձ,— կարգադրեց զինվորն ու քայլեց դեպի կայարանի շենքը:

Պարզ է, եթե նա այդ տոնով էր խոսում, ուրեմն պատիժը ծանր էր լինելու: Նրանք մտան մի մեծ, խունացած պատերով սենյակ: Գրասեղանի առջև մի հաղթանդամ, անքուն աչքերով սպա էր նստած:

— Թո՛ւյլ տվեք զեկուցել:— Զինվորը ձգվեց տեղում:— Հենց ինքն է, որ կա՝ Պոլունինա Վարվառան: Կայարանում հանդիպեցի, ընդ որում՝ ոչ մենակ:

Սպան բարձրացրեց գլուխը: Վարյան կանգնած էր ոչ կենդանի, ոչ մեռած, իսկ ցլիկը անընդհատ ձգում էր պարանը: Երևի իր նման վախենում էր:

— Այդ ի՞նչ ընկեր ես գտել,— զարմացած հարցրեց սպան:

— Ցլիկ է:

— Տեսնում եմ, որ ցլիկ է: Հարցնում եմ՝ որտեղի՞ց:

Սպան կամ ոչինչ չգիտեր, կամ ձևացնում էր, որ չգիտի:

— Ես սրա պատճառով մնացի, ազնիվ խոսք,— անսպասելիորեն սրտապնդվեց Վարյան,— ինքը փախավ վագոնից: Իսկ Եգորովը ուզում է ինձ ու մայրիկին ռազմական տրիբունալ հանձնել:

Հարևան սենյակից զինվորները հետաքրքրությամբ նայում էին Վարյային: Արտաքինից նա տասնչորս, նույնիսկ տասնհինգ տարեկան էր երևում, բայց ոչ տասներեք, ինչպես իրականում էր:

— Դե լա՛վ,— ճակատը շփելով ասաց սպան,— նստի՛ր, մի բան կմտածենք:



Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

Զինվորները ցիկին կապեցին ջեռուցման խողովակից, իսկ Վարյային նստեցրին փափուկ, կաշվե բազմոցի վրա:

— Այսպես ուրեմն, Վարվա՛ռա Պոլունինա,— առջևը դրված չվացուցակը զննելուց հետո, գլուխը բարձրացրեց սպան,— քեզ կուղարկենք մարդատար գնացքով: Երկու ժամից մայրիկիդ մոտ կլինես:

Վարյան շնորհակալություն հայտնեց ու շոյեց ցիկի գլուխը:

— Իսկ դրան ստիպված կլինես այստեղ թողնել:

Վարյան մեքենայորեն կրծքին սեղմեց կենդանու խոշոր ճակատը.

— Ո՛չ, ո՛չ, նա անպայման պետք է ճակատ հասնի: Եգորովն ասաց:

— Ի՞նչ, հոգի՞ հանեցիր քո Եգորովով,— հոգնած ժպտաց սպան:— Եգորովը ինքն է մեզ հայտնել, որ գնացքից ուշացել է Պոլունինա Վարվառա անունով մի աղջիկ և խնդրել է գտնել ու հասցնել իրեն: Բայց կենդանու մասին ոչինչ չի ասել:

— Ինչպե՞ս թե,— վրդովվեց Վարյան,— դուք գիտե՞ք, յուրաքանչյուր կենդանու համար այնտեղ՝ ճակատում...

— Իմացա, իմացա,— կարճ կտրեց սպան ու նորից թաղվեց թղթերի մեջ:— Լավ, որ այդքան շատ ես ուզում՝ կփորձենք ապրանքատարով: Յա՛կովլև:

— Լսո՛ւմ եմ:

— Վեցերորդ գծի վրա դատարկ վագոն պիտի լինի: Տեղավորի՛ր, ասա ե՛ս եմ կարգադրել, միայն շտապ, քիչ անց գնացքը ճանապարհ կընկնի:

— Այս րոպեին,— ասաց Յակովլևն ու գլխարկը դնելով դուրս թռավ:

Նրանք վազում էին երեքով: Զինվորը, Վարյան ու շեկ ցիկը: Նրանք մարդկանց հրհրելով ու ռելսերի վրայից ցատկոտելով ի վերջո հասան վեցերորդ գծամասը, որտեղ արդեն պատրաստ կանգնած էին ապրանքատար վագոնները և նավթի ցիստեռնները:

— Խեղճ երեխան,— Վարյայի գունատ, տխրած դեմքին նայելով ասաց հսկիչը, երբ զինվորը շտապողականի նման ամեն բան բացատրեց նրան:

— Ինձ հարկավոր է միայն մերոնց հասնել,— լացակումած խնդրեց Վարյան,— մայրիկս...

Հսկիչը ուսերը թոթվեց.

— Խնդրեմ, կարող եք ամենավատ տեղը՝ արգելակման հարթակին տեղավորել, եթե կարողանա դիմանալ...

Յակովլևը շնորհակալություն չսպասեց: Նա Վարյային բարձրացրեց վագոն, բայց հետո էլ, ա՛յ քեզ բան, ցիկն էր կամակորություն անում: Ստիպված եղան մի քանի հոգով նրա ոտքերը կապել ու գրկած տանել վագոն: Այդ ժամանակ նրանց գնացքին մոտեցավ մի զինվոր: Նա ըստ երևույթին շատ էր վազել, որովհետև դեմքը շիկնած էր ու ամբողջովին քրտինքի մեջ կորած:

— Սա՛ քեզ, սա՛ քեզ, սա՛ էլ, սա՛ էլ, պարետը ուղարկեց,— արագ-արագ ասաց նա ու գրպանները դատարկելով Վարյային մեկնեց պահածոյի տուփ, հաց, երշիկ:

Վագոնները դղրդոցով ցնցվեցին ու դանդաղ առաջացին առաջ: Բայց ուղեկցող զինվորները կանգնել ու չգիտես ինչու չէին հեռանում: Վարյան զգաց, որ իր սիրտն էլ է սեղմվում:

— Շնորհակալությո՛ւն, զինվո՛ր եղբայրներ, շնորհակալությո՛ւն,— արցունքները կուլ տալով՝ հազիվ շշնջաց նա:

Գնացքը շատ շուտ արագացրեց ընթացքը: Նա ծուխ ու մուր թքելով՝ սլանում էր անտառների միջով ու կարծես հասկանում, որ Վարյան պետք է նախորդ գնացքին հասնի և որքան շուտ, այնքան լավ: Քիչ անց, վագոն մտավ հսկիչը.

— Հը՞, հո չե՞ս սառել:

Վարյան շարժեց գլուխը:

— Գիշերը ցուրտ կլինի, սեղմվի՛ր ցիկին ու քնի՛ր: Այդպես տաք է ու հարմար:

Նա երկու խորոված կարտոֆիլ մեկնեց Վարյային ու բարի գիշեր մաղթելով՝ ամուր փակեց դուռը: Մութն, իսկապես, շուտ ընկավ: Վարյան ցիկի հետ կիսեց պարետի ուղարկած հացն ու կաթը, մինչև անգամ խորոված կարտոֆիլն ու փորձեց պատըսպարվել նրա փորի տակ, որտեղ հաճելի ջերմություն կար: Ցիկը դրան ամենևին դեմ չեղավ, ընդհակառակը՝ ամբողջ գիշեր ինքնագոհ սլացնում էր: Երբ Վարյան աչքերը բացեց, գնացքը կանգ էր առել ինչ-որ փոքրիկ կայարանում: Նա մոտեցավ դռանն ու անհամբերորեն դեմառդեմ հանդիպեց ծանոթ էշելոնի վագոններին ու մինչև անգամ իրեն՝ Եգորովին:

Նա մի պահ շփոթվեց, չիմացավ ինչպես դիմել ավագ ուղեկցողին ու գոռաց.

— Ա՛, ա՛, ա՛...

Եգորովը, պարզ է, նույնիսկ նրա կողմը չշրջվեց: Վարյան ճարահատ բացեց վագոնի դուռը, բարձր հարթակից նետվեց ցած ու ետևից ամբողջ ուժով քարշ տվեց ցիկին: Բայց ապրանքատար գնացքի վագոնները վերջ ու սկիզբ չունեին: Մինչև բոլորը շրջանցեին, էշելոնն արդեն կհեռանար: Վարյան մի պահ մտածեց ու, առանց ժամանակ կորցնելու, մըտավ վագոնի տակ: Բայց մի կես մետր էլ չէր առաջացել, երբ պարանը փաթաթվեց ինչ-որ խողովակի ու ցիկը մեխվեց տեղում: Վարյան հուսահատ մերթ ցիկի համառ կերպարանքին էր նայում, մերթ վագոնի սև ու սարսափելի անիվներին: Ստիպված առանց պարանը ձեռքից թողնելու, նա դուրս սողաց վագոնի տակից ու կրկին դեմառդեմ Եգորովին հանդիպեց:

— Եգո՛րով քեռի, Եգո՛րով քեռի,— արցունքներ կուլ տալով ճչաց նա: Եգորովը չհասկացավ էլ, թե որտեղից է գալիս ձայնը: Նա զարմացած այս ու այն կողմ նայեց ու նկատելով վագոնի տակից իրեն մեկնված ձեռքը, գոռաց.

— Այդ ո՞ւր ես մտել, հիմարի՛կ: Գժվե՞լ ես, ի՞նչ է:

— Նրան օգնեցե՛ք,— Եգորովի գրկից ազատվելով ասաց Վարյան,— ցիկը վագոնի տակ է:

— Թքա՛ծ ցիկի վրա,— փախստական կենդանուն դուրս քաշելով փնթփնթաց Եգորովը,— մի՞թե կարելի է դրա համար այդպես տանջվել:

Վարյան ցիկի պարանը հանձնեց Եգորովին, ու երկուսով ուրախ-ուրախ վերադարձան իրենց էշելոնին: Եգորովը քայլում էր իսկական զինվորի նման՝ հպարտ ու ինքնագոհ՝ չմոռանալով ամեն քայլափոխին ուղղել կողքից կախված ատրճանակը:

## ԶՎԱՐՃԱԼԻ ՓԱՍՏԵՐ

* * *

1945-ի գարնանը, երբ սովետական մարտիկները գտան Դրեզդենի պատկերասրահի գանձերը, հայտնի դարձավ, որ դրանք կործանումից փրկելու համար անհրաժեշտ է անհապաղ միջոցներ ձեռք առնել: Հարց ծագեց, թե ինչ ձևով արվեստի այդ գանձերը Սովետական Միություն հասցնել՝ ինքնաթիռո՞վ, թե՞ գնացքով:

Սովետական օդային ուժերի հրամանատարը պնդում էր, թե՝ ինքնաթիռով, քանի որ թանկ է ամեն րոպեն: Սակայն մարշալ Կոնևը, որ այդ ճակատամասի գլխավոր հրամանատարն էր, այլ կարծիքի էր: Նա գտնում էր, որ այս դեպքում գնացքն ավելի ապահով է: Նա քոլորովին էլ կասկածի տակ չէր առնում ինքնաթիռի ապահովությունը, բայց այնուամենայնիվ, ո՞վ գիտե:

Օդային ուժերի հրամանատարը տարակուսանքով տարուբերեց գլուխը.

— Ես Ձեզ չեմ հասկանում, ընկե՛ր մարշալ: Դուք ինքներդ բազմիցս թռել եք մեր ինքնաթիռներով և ամեն անգամ ողջ և առողջ տեղ եք հասել:

— Այո՛, սիրելի՛ս,— ասաց Կոնևը,— բայց այս անգամ բանն այլ է: Ուղևորը ոչ թե ես եմ, այլ՝ Ռեմբրանդտն ու Տիցիանը:

* * *

Երբ երիտասարդ Լիստը իր առաջին համերգն էր տալիս, դահլիճից սուլոցներ լսվեցին: Լիստը կանգ առավ, սպասեց մինչև դահլիճում նորից լռություն տիրեց, հետո շարունակեց նվագել, միաժամանակ սուլելով երաժշտական երկի մեղեդին: Ներկաները լսում էին զարմացած: Այսպիսի բան դեռ երբեք տեղի չէր ունեցել համերգասրահում: Վերջում Լիստը հարգալից խոնարհվեց հասարակության առաջ և ասաց.

— Մեծ հաճույքով ընդառաջեցի արվեստին քաջատեղյակ այս հասարակության ցանկությանը: Ես ամեն ինչ արեցի բավարարելու համար այն հասարակության պահանջը, որն ինձ հրատակ կերպով հասկացրեց, թե սուլոցի արվեստը նախորդում է դաշնամուրի նվագին:

*Գերմ. թարգմ.*
*ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*




*Ուսուցչուհու տան ցանկապատի մոտ ճանապարհի ոլորանից թեքվել, հոգնած գալիս էին բոլորը՝ իբր թե հաղթած 7-րդցիները, իբր թե պարտված 8-րդցիները: Կարծես ծերունիներ լինեին, բոլորը մի տեսակ ծալված էին: Փայտե հրացանները քարշ էին տալիս: Ոմանք ձյուն էին լիզում: Ալարում էին խոսել: Ամեն վայրկյան կարող էին վար թափվել ու քնել:*

*— Կամ եթե ուզում եք,— ասացի ես,— թող Արտավազդը մեր խումբը գա:*

*— Իսկ հիմա համաձա՞յն ես,— ասաց ուսուցչուհին:*

*Ես գլուխս կախեցի:*

*— Իսկ ինչո՞ւ ես համաձայն:*

*— Համաձայն է,— ասաց Մաղաթը:*

*— Քեզ խոսք չի հասնում, դու լռի՛ր: Ինչո՞ւ ես համաձայն:*

*— Համաձայն եմ, որովհետև վազքից հեշտ բա՞ն:*

*Նա տխրեց:*

*— Այո՛,— մտամոլոր շշնջաց նա,— վազքից հեշտ...*

*Հեղեղը սլանում է, քամին սուրում է, բազեն ճախրում է, խլածաղկի փրփուրը թափառում է, թևերն ուղղած՝ լորենու սերմը քամու հետ թռչո՞ւմ, թռչում է— ամեն ինչ գնում է, ամեն ինչ ճախրում է:*

*— Տեղդ վերջինի հետ փոխի՛ր, Արտավա՛զդ,— ասաց նա:*

*Տրեխավոր ոտքերի մեր քայլից մի քիչ ձայն այնուամենայնիվ ելնում էր, իսկ նա տեղն այնքան անաղմուկ փոխեց, որ ես կարծեցի ուսուցչուհու կարգադրությունը չի լսել, ես շուռ եկա նրան ասելու, որ, այո, այդ այդպես է, ես նրան ընկերաբար հրավիրում եմ, այնինչ՝ նրա լռիկ գոյությունը հիմա իմ շարքում էր:*

*— Առաջի՛ն շարք, գետն ի վեր մինչև Տաք աղբյուր՝ վազ-քո՛վ: Այնտեղ ծաղկած ուռենի կա, յուրաքանչյուրը բերում է ծաղկած ուռենու մի ճյուղ: Երկրո՛րդ շարք...*

*Մինչ նա կմտածեր մեր առաջադրանքը՝ նրանք ձորակն անցան ու դուրս եկան Կենտ կաղնու զառիվերը: Իմ սրունքները պրկվեցին ու սկսեցին դողալ. Թույլ տար վազեինք նույն ճանապարհով, մի վայրկյանում հասնեինք նրանց, անցնեինք՝ մինչև՛ ծաղկած ուռենի:*

*— Երկրո՛րդ շարք, գետն ի վար մինչև Սղոցարաններ ու ետ՝ վազքո՛վ: Յուրաքանչյուրը բերում է մի բուռ թեփ:*

---

*Սկիզբը՝ 1973 թ. № 4։*

Ես դեռ մտածում էի գետն ի վեր ծաղկած ուռենուն հասնելու մասին, ես ոչ մի կերպ չէի կարողանում մեր անցնելիք ճանապարհին սղոցարան հիշել:

— Հրամանը կրկնի՛ր:

Բայց, կրկնելուց առաջ, ես պետք է հասկանայի հրամանը: Ես ապուշի պես նայեցի նրան:

— Թե՞փ,— հարցրի ես:

— Թե՛փ:

Ես դարձյալ չհասկացա: Բայց ես այնքան էլ մեղավոր չէի. աղջիկներն այդտեղ կանգնած էին, ինչ որ բերեինք, ինձ թվում էր, որ տալու էինք աղջիկներին: Նրանց խումբը ուռենու ծաղկած շիվ էր բերելու, իսկ մենք թե՞փ:

— Թե՞փ,— ասացի ես:

— Երկրո՛րդ շարք, գե՛տն ի՛ վա՛ր,— հատ-հատ ասաց նա,— մինչև Սղոցարաններ ու ետ՝ վազքո՜վ. Յուրաքանչյուրդ բերում է մի բուռ թեփ:

Այս անգամ ինձ թվաց, թե ես կաղնու կեղև եմ շալակելու, իմ գոտկատեղը հարվելու է, այսինքն՝ քերծվելու, քերծվածքը նորից քերծվելու ու մրմռալու քրտինքից:

— Լսո՛ւմ եմ: Գետն ի վար վազքով մինչև Սղոցարաններ ու վազքով ետ: Թո՛ւյլ տվեք կատարել հրամանը:

— Սղոցարաններից բերելով մեկական բուռ թեփ:

— Այո՛,— ասացի ես:

— Կրկնի՛ր:

Դա, ճիշտն ասած, բերանդ զոռով թեփ լցնելու նման էր: Ես տհաճությամբ կրկնեցի:

— Սղոցարաններից պետք է բերենք յուրաքանչյուրս մի բուռ թեփ:

— Այո՛: Վազքո՜վ:

Մենք պոկվեցինք: Մենք թռանք, բայց իմ անունը տվեցին: Ուսուցչուհին ինձ ետ կանչեց: Իմ վազքը փչացնում էին, ես ետ դարձա վիրավորված ոչ միայն թեփի համար: Ուսուցչուհին ընդառաջ էր գալիս և ուշադիր, մի տեսակ՝ շատ ուշադիր զննում էր ինձ:

— Ձեզ չչարչարեք և իրար չչարչարեք,— ցածըր ասաց նա:

— Լսո՛ւմ եմ:

Նա ժպտաց:

— Լսի՛ր, է՜, սա հրաման չի,— ցածր ասաց նա,— արագ չգնաք, հանգիստ գնացեք, հանգի՛ստ եկեք:

— Մաղաթենք արագ գնացին:

— Նրանք՝ ուրիշ, դուք՝ ուրիշ,— ասաց նա:— Հանգի՛ստ գնացեք:

— Լսում եմ:— Կարճ ճանապարհով, ծյուների միջով, դպրոցի այգով, ցանկապատի վրայից ցատկելով՝ ես հասա իմ խմբին:

— Տղերք...— ես նրանց ասելու էի, թե ով է եղել գեներալ Մադաթովը և ինչ եմ դրել Մադաթի անունը, Օտարը, սակայն, այդ պահին, երբ ես հասա նրանց, ընկավ: Ոտքի տակ սառույց չկար, ոտքերը մի տեսակ խճճվեցին ու ընկավ: Ես ուզում էի դժգոհել, բայց նա մեղավորի պես գլուխը կախեց:

— Ոչինչ,— ասացի ես,— ցավե՞ց:

— Ընդհակառակը,— սրամտեցին:

— Ոտքիդ տակ սառույց չկար,— ասացի ես:

— Չկար,— ցածր՝ մրջյունի ձայնով ասաց նա:

— Մի՛ խոսիր,— ասացի ես,— միայն քթո՛վ շնչիր:

— Քթով եմ շնչում,— ցածր՝ մրջյունի ձայնով, այսինքն՝ ինչպես մրջյուններն են խոսում իրար հետ, ասաց նա:

— Վազքից հեշտ բա՞ն,— ասացի ես:

— Կվազեմ,— շշնջաց նա:

— Գիտեմ, որ կվազես,— ասացի ես,— միայն քթո՛վ շնչիր: Եթե քթով չշնչես՝ կոկորդդ կչորանա ու բերանդ կդառնանա:

— Բերանս հիմա... դառը չի,— շշնջաց նա:

Մենք դուրս եկանք գետափնյա ուղիղ ճանապարհ ու թափով գնացինք: Քամին սկսեց սուլել իմ ականջների մեջ: Օտարի կարմիր վերնաշապիկը երևում ու կորչում, երևում ու կորչում էր իմ ուսի վրայով իմ աչքի անկյունում: Մտնում էր իմ աչքի անկյունը, մի քիչ գալիս էր ինձ հետ ու չքանում էր իմ ուսի ետևում: Ես հասկացա, որ նա ճգնում է, ինքն իրենից ելնում է առաջ անցնելու կամ վազելու ինձ հետ ուս-ուսի: Ես տեսա նրա լարված դեմքը և սեղմված բաց ատամները: Նա, այո՛, ուզում էր ինքը իր մարմնից դուրս թռչել, բայց ինձ համար հաճելի էր լինել նրա-

## ԹՎԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ

ՌԱԶՄԻԿ ԴԱՎՈՅԱՆ

Խնձոր ունեմ տասներկու հատ,
Մի մասը՝ լավ, մի մասը՝ վատ:
Երեք հատ՝ քեզ, երեք հատ՝ ինձ,
Մեկը լավն է երեք հատից:
Երկու հատ՝ քեզ, երկու հատ՝ ինձ,
Մեկը լավն է երկու հատից:
Մեկ հատը՝ քեզ, մեկ հատը՝ ինձ,
Ինչպե՞ս ջոկենք լավը վատից:

նից թեկուզ երկու քայլ, թեկուզ կես քայլ առաջ։

— Ա՛յ տղա, ա՛յ տղա, ա՛յ տղա,— կանչեցին։— Ա՛յ տղա, էդ ի՞նչ եք անում,— կանչեց մի ծերունական մաշված ձայն։ Սարգիս Կծան պապն էր՝ իմ պապի եղբայրը, կովը ջրելու էր բերել։ Կովը լղար էր, մեջը ուժ չկար մեզնից խրտնելու։ Պոչը բռնած, որպեսզի կովը չընկնի, թե՞ ինքը չընկնի, պապը ծիծաղեց մեր վազքի վրա,— էդ ի՞նչ եք անում, ա՛յտա, էդպես թփթփալով գնում եք, Գերմանիան անկարծ կխրտնի, ձորը կընկնի։— Պապը ձեռնափայտով կըտրեց մեր ճանապարհը՝ իբր թե ահա այդպես ինքը մեզ թող չի անի անկարծ խրտնեցնել Գերմանիային, և ինձ բռնեց։ Ես բռնվեցի, որովհետև եթե քաշքշվեի՝ պապը թույլ էր, կընկներ։ Նա չարչարվում ու չարչարվում էր կծել իմ այտը, բայց թե՛ իմ դեմքին միս չկար և թե՛ պապի միակ ատամը չէր բռնում։

— Կծան պապը ժենը կորցրել է, կարենում չի կծի,— ծերունու իր պղտոր ձայնով ասաց նա։

Ես դուրս սահեցի նրա ոսկրոտ գրկից և հեռանալուց հետո սրբեցի դեմքս, բայց այդ ամբողջ վազքի ժամանակ ես հիշում էի, որ ինձ սիրել են, որ ինձ սիրում են, որ իր չոր, թույլ մարմնից պապն ինձ համար սեր է հանել. իմ դեմքը հիշում էր նրա մորուքի փափկությունը, իմ ականջի մեջ անընդհատ կար նրա պղտոր ձայնը, ես հիշում էի նրան, որը իրեն, իբր երեխաներիս անունից, Կծան պապ էր ասում, իր մի կենտ ատամին ժանիք՝ ժեն էր ասում։

Մենավոր խաչքարի մոտ ես հասա իմ խմբին, Օտարի հետ ուս-ուսի մի քիչ գնացի և սկսեցի կամաց-կամաց նրան ետ թողնել։ Նա չէր ուզում ետ մնալ ինձնից, նա ուզում էր գալ ինձ հետ ուս-ուսի, միշտ՝ ուս-ուսի, դրա համար նա իր նիհար կուրծքը, ինչպես կարճ վազքի ժամանակ են անում, առաջ էր նետում, կծկվում էր իր մեջ և դարձյալ դուրս էր նետվում ինքն իր միջից. նրա դեմքը ձգվել ու կիսաբաց ատամները սեղմվել էին, բայց նա ետ մնաց. նրա կարմիր վերնաշապիկը իմ աչքի անկյունից իմ ուսի վրայով դանդաղ ետ սահեց։

Հիմա ես խմբի կենտրոնում էի։ Թափ-թափ-թափ-թափ-թափ-թափ-թափ-թափ- թափ - թփա - թփա - թփա - թփա-թփա-թփա... Իմ մարմինը լեցուն էր հրճվանքով, ուրախությունից իմ սիրտը դուրս էր թռչում, ես ուզում էի ծղրտալ։ Վազքը իմ մարմնի պահանջն էր, ինչպես որ թևերի պահանջը ճախրն է։ Ես կարող էի այդպես արագանալ, արագանալ, պոկվել գետնից ու... Ես ծղրտոցով ետ թողեցի դարձյալ մեկին։ Իմ ծղրտոցի վրա առջևից վազողը ետ նայեց։ Ես հավասարվեցի նրան, մենք գնացինք ուս-ուսի։ «Կներես, բայց ես քեզ ետ եմ թողնելու»,— ես արագացա, արագացա, արագացա, ես կարծեցի նրան արդեն ետ եմ թողել, թափ-թափ-թափ-թափ-թափ-թափ-թափ-թփա-թփա-թփա-թփա-թփա-թփա, ես ինձ ասացի, թե նրա ոտնաձայնն արդեն լսում եմ իմ ետևից, նա, սակայն, գալիս էր ինձ հետ ուս-ուսի և դեռ մի քիչ էլ առաջ. շեղակիորեն երևում էր նրա մեջքը։ Մեջքը, ապա, երևաց դեմառդեմ և սկսեց դանդաղ, սանտիմ առ սանտիմ, բայց անընդհատ հեռանալ։ Նա իմ խմբի 4—6—8—10—12-ից մեկն էր, նա մի սովորական համար էր, նա ինչո՞ւ էր ինձ ետ թողնելու։ Ես կծկվեցի, մտա ինքս իմ մեջ ու դուրս շպրտվեցի իմ միջից. ես այնպես էի վազում, ինչպես վազում են կարճ վազքի վերջին քայլերը. ես կծկվում ու բացվում էի, կծկվում ու բացվում էի, թվում էր, թե հիմա ես կպատռվեմ, բայց միևնույն է՝ նա հեռանում ու հեռանում էր։ Եվ ինձ մի պահ թվաց, թե նրա փոխարեն ես եմ այդպես

հեռանում և իմ փոխարեն այդպես լարվում, ճաքում ու չի հասնում, լարվում ու ետ է մնում Արտավազդը, և իմ կրծքի տակ նրա սիրտն է այդպես նեղվում և իմ տակ նրա ծնկներն են ծալվում։

Ես դանդաղեցի, «խմբի ղեկավարը կարող է նաև վերջից գնալ, որպեսզի ոչ ոքի չթողնի մնալ ճանապարհին», առաջ թողեցի մեկին,

երկրորդին,

երրորդին,

չորրորդին,

թույլ տվեցի, որ կարմիր վերնաշապիկը հավասարվի և գա ինձ հետ ուս-ուսի, և հարցրի.

— Ո՞նց ես։

Նա շշնջաց՝ լավ եմ։

— Թեփ ենք բերելու,— ասացի ես։

Նա շշնջաց՝ թեփ ենք բերելու։

— Հո մի տեսա՞կ չես,— հարցրի ես։

Նա չպատասխանեց։ Հետո նա շշնջաց.

— Որ հավասար ենք գնում՝ էլ մի տեսակ չեմ լինում։

— Ինչքա՞ն կլինենք եկած, կե՞սը,— ասացի ես։

— Քիչ է մնում,— շշնջաց նա։

— Դու Սղոցարանների տեղը չգիտե՞ս։

— Մերս մի անգամ ուղարկում էր,— շշնջաց նա,— հերս չթողեց։

— Դեռ չենք կիսել,— ասացի ես։

Նա շշնջաց.

— Ես ինձ ասում եմ... քիչ է մնացել... հիմա հասնում ենք։

— Չէ՛, շատը դեռ մնում է, Սղոցարաններից կաղնու...— ես հասկացա ու հարցրի.— Քեզ վա՞տ ես զգում։

Կոկորդը երևի չորանում էր, նա թուքը կուլ տվեց ու շշնջաց.

— Որ միասին ենք գնում...

— Մաղաթի անունը դրել եմ գեներալ Մաղաթով,— ասացի ես։ Այդտեղ ինձ թվաց, թե ես ուզում եմ, սակայն ամեն անգամ մոռանում եմ ասել շատ կարևոր մի բան, հուզիչ մի բան։Նա հավասարվեց ինձ, և ես հասկացա, թե ինչ եմ մոռանում։— Մենք միշտ միասին կլինենք,— ասացի ես։

Բայց դա անհնար էր։ Ես դանդաղում էի, նա դանդաղում էր, ես արագանում էի, նա ետ էր մնում, և ես դարձյալ դանդաղում էի։ Իսկ մերոնք արդեն անցնում էին Փշակ կաղնու ոլորանը։ Ես այդպես ինչքան դանդաղեի, նա կդանդաղեր, մինչև վերջնական կանգառ։ Ջրվեժն, այո՛, քարից թռչում է, արծիվն, այո՛, ճախրում է, կանաչ արտն, այո՛, հովի հետ գնում է, ամեն ինչ շարժվում է, ամեն ինչ հրճվում է, ձյունը ցոլցլում ու խաղում է արևի մեջ... Բայց Սարգիս պապը հազիվ կանգնած էր, իսկ նրա կովն ալարեց խրտնել։

— Էս ի՞նչ է,— շշնջաց նա.— լավ չեմ տեսնում։

— Արև է,— ասացի ես,— ձյուն ու արև։

— Ի՞նչ արև է,— շշնջաց նա։

— Աչքերդ կկոցի՛ր։

Իր գեղեցիկ գլուխը նա ետ էր գցել ու գալիս էր՝ դեմքը արևին պարզած։

— Խա՞ղ ես անում,— ասացի ես։

Նա հավասարվեց ինձ։

— Արև է, բայց լավ չենք վազում,— ասացի ես։

Նա շշնջաց.

— Քիչ է մնացել, չէ՞։

— Վո՜ւյ, վո՜ւյ, վո՜ւյ, վո՜ւյ,— լսեցի ես։

Արևի մեջ ճամփեզրի քարերին նստոտել էին կանայք՝ մեր մայրերը և կարմրած, արևածաղիկների խմբի պես բոլորը միասին դեմքները մեզ էին դարձրել։— Էս երեխեքին էդ աղջիկն էս ինչո՞ւ է չարչարում,— ասացին նրանք։

Իսկ իրե՞նց ինչու էին չարչարում։ Նրանցից մեկը հակագազը գլխից չէր հանել։ Նրանց դեմքերը հակագազի ռետինե նեղվածքում ու քայլքի շոգից էին այդպես կարմրել, թե չէ՝ նրանք մեզնից էլ գունատ էին։

— Թեփի՛,— նետեցի ես։

— Իմ թեփը ձեզ տամ՝ ետ դարձեք,— ասացին նրանք։

Մենք անցանք։

— Տո ես դրա թեփի գլո՜ւխը հողեմ, էս երեխեքը բա մե՞ղք չեն...

Մեղքը, սակայն, իրենք էին. իրենք էին. հետո, լվանալու մեր ոտքերը, իրենք էին տրորելու, տաք ջրով, մեր ծնկները, հետո մենք չէինք տաք ջրով տրորելու նրանց ոտքերը։

— Բերանդ փակի՛ր,— ասացի ես,— քթո՛վ շնչիր։

Նա փակեց, բայց քիչ հետո, երբ ես նայեցի, նա շնչում էր լրիվ բաց բերանով։

— Քթո՛վ շնչիր։

— Որ քթով եմ շնչում՝ օդը...— շշնջաց նա։

— Օդը ի՞նչ։

— Դառն է։— Նա եկավ դիպավ ինձ ու դարձյալ ետ մնաց։

— Էդ շորդ կլվանաք,— ասացի ես։

— Լվացել է, տառերը չեն անցնում։

— Մաղաթի անունը Օտար... Մաղաթի անունը գեներալ Մաղաթով եմ դրել,— ասացի ես։



— Նրանց տեղը հիմա դժվար է, բարձրանում են,— շշնջաց նա։— Նրանք հիմա կանգնել են, չեն կարողանում։

— Դժվարը մեզ համար վերադարձին է լինելու։

— Նրանցը հիմա է դժվար,— շշնջաց նա։

— Նրանք ուռենու ծաղկած ճյուղ են բերելու։

— Նրանց տեղը հիմա դժվար է,— շշնջաց նա,— Մադաթի սիրտը հիմա խառնում է։

— Քո սիրտը խառնո՞ւմ է։

— Մեր տեղը ուղիղ է, մենք իջնում ենք,— շշնջաց նա։— Նրանք հիմա բարձրանում են։

— Նրանք հիմա ետ են գալիս,— ասացի ես,— ուռենու ծաղկած ճյուղեր են բերում, իսկ մենք թեփ ենք տանելու։

— Թեփ ենք տանելու։

— Թեփ ինչո՞ւ ենք տանելու։

— Չգիտեմ,— ասաց նա,— ուսուցչուհին ասել է՝ կբերեք։

— Որպեսզի ինքը տեսնի, որ մենք հասել ենք Սղոցարաններ։ Թեփը դրա համար է։ Որպեսզի մինչև Սղոցարաններ անպայման վազենք։ Ծաղկած շիվըն էլ դրա համար է։

— Նրանց օդը հիմա դառն է,— ասաց նա.— Մադաթի սիրտը հիմա խառնում է։— Նա եկավ, գըլխով դիպավ ինձ, կարծես ուզում էր ինձնից կառչել, բայց դարձյալ ետ մնաց։

— Իզուր, կանանց թեփից դու պիտի վերցնեիր ու ետ դառնայիր,— ասացի ես,— ե՛տ դարձիր, կանանցից թե՛փ վերցրու ու գնա, մենք կգանք կհասնենք։

Նա կողք-կողքի գնաց, ճանապարհից դուրս ընկավ ու եկավ դիպավ ինձ։

— Ե՛տ դարձիր, կանանցից թե՛փ վերցրու, գնա՛. մենք կգանք կհասնենք, չե՞ս լսում։

Նա կարծես ինքը չէր գնում, նրա մեջ կարծես գնում էր մեկ ուրիշը, որ չէր ենթարկվում նրան։ Այդ մեկ ուրիշը նրան հրում ու հրում էր ճանապարհից դուրս, իսկ նա այդ մեկ ուրիշին, զոռով, ետ էր հրում դեպի ճանապարհ։

— Կանգնի՛ր, ե՛տ դարձիր։— Ես կանգ առա ու շուռ եկա։ Նա կանգնեց ու օրորվեց։ Նա դանդաղ բարձրացրեց իր գեղեցիկ գլուխը։ Նրա աչքերը պղտոր էին։— Ե՛տ դարձիր, կանանցից թե՛փ վերցրու…

Նրա հայացքը շաղված էր, նրա միջից կարծես նայում էր հիվանդ հորթը, որը չի հասկանում, թե ինչ են ուզում իրենից և ինչու չեն թողնում հանգիստ մեռնել։

— Խուլ է,— շշնջացի ես,— խուլ, խուլ է, կարծես ջրի տակ լինի։

Ես սպասեցի նրա դառնալուն, բայց նա միայն օրորվում ու պղտոր հայացքով նայում էր։ Ես նրան ետ դարձրի ու հրեցի դեպի գյուղ։ Նա չէր դիմադրում, ինձ թվաց, թե նա համաձայն է, վերադառնում է։

— Հիմա դպրո՞ց ենք գնում,— շշնջաց նա։

— Դո՛ւ ես գնում, ես վազում եմ Սղոցարաններ, ես քեզ համար թեփ կբերեմ։

— Դուք բոլորդ վազում եք,— շշնջաց նա։

— Ուշանում եմ,— ասացի ես,— ուշանում եմ, քո պատճառով ուշանում եմ, տղերքը հիմա Սղոցարաններում են։

— Դուք բոլորդ վազում եք…— Նա կծկռոտվեց։ Նա ուժ չուներ հեկեկալու, նա սկսեց լուռ արտասվել։— Դուք բոլորդ վազում եք, դու վազում ես…

Լացն սկսեց ինձ խեղդել։

— Իմ փոխարեն դո՞ւ ես լաց լինում,— պայթեցի ես,— քո պատճառով էսքան ուշացա։

— Դե արի միասին ետ դառնանք,— խուլ, ինչպես որ ձկներն են խոսում ջրերի տակ, շշնջաց նա,— ես ու դու միասին ետ դառնանք։

— Ես ինչո՞ւ ետ դառնամ,— ես կարողանում եմ՝ վազում եմ։ .

— Դուք բոլորդ վազում եք…

— Ես քո հերն ու մե՞րն եմ, ինչո՞ւ ես ինձ մոտ լաց լինում, գնա քո հորումո՛ր մոտ լաց եղիր։— Ես նրան հրում էի դեպի գյուղ, իսկ նա շշնջում էր.

— Միասին ետ դառնանք… երկուսով… ես ու դու…

— Ճանապարհը քեզ չի ուտի, ճանապարհին գայլ չկա, գնա՛։

— Ո՛չ,— կտրուկ ասաց նա։

— Իսկ ի՞նչ։

Նա դանդաղ բարձրացրեց իր գեղեցիկ գլուխը և պղտոր խոշոր աչքերը հառեց ինձ։

— Իսկ ի՞նչ,— կրկնեցի ես,— գիտես, որ գայլ չկա, ինչո՞ւ չես մենակ ետ գնում։



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Աղամախենձորը նրա բարակ վզին դանդաղ բարձրացավ, մնաց ու դանդաղ իջավ։— Պիտի ասեն...— Նա հայացքը խոնարհեց։

— Ի՞նչ պիտի ասեն։

— Ասելու են,— շշնջաց նա,— ասելու են՝ «Բոլորը տեղ են հասել, ճամփի կեսից միայն Օտարն է ետ եկել»։ Բոլորը, բոլորը վազում են, միայն ես չեմ...

— Դու ուզում ես...— իմ կոկորդը խցվեց։ Եվ որպեսզի լաց չլինեմ, և որովհետև նա ճիշտ էր, և որովհետև ուշանում էի, ուշանում էի, վայրկյան վայրկյանի ետևից ուշանում էի, և որովհետև ոչինչ անել չէի կարող, ես հրեցի նրան.— Դե գնա՜։

Նա ընկավ, ու ես վազեցի։

— Էդպես նստած մնա,— ուսիս վրայով նետեցի ես,— քո մի բուռ թեփը ես կբերեմ։

Սակայն նա ելել ու ճռճվելով գալիս էր։ Ես կանգ առա, որպեսզի երբ ինձ հասնի՝ նրան խփեմ, բայց նա չհասավ ինձ. նրա ոտքերը խառնվեցին, նա ընկավ։— Ապո՜ւշ,— ծղրտացի ես։ Իսկ նա չորեքթաթվել էր ու այդպես չորեքթաթված, դանդաղ բարձրացնում էր հորթի իր գեղեցիկ գլուխը։ Իմ մեջ նա այդպես տպավորվեց։

Ես փախա։ Ես վախենում էի ետ նայել։ Ես վախենում էի նորից տեսնել նրա ճռճուն ընթացքն ու անկումը։ Ես հեռանում ու հեռանում էի։ Ես ինձ ասում էի, թե ահագին ճանապարհ ենք կտրել՝ իմ վազքը հիմա ծանր է հոգնությունից. թե մենակ եմ գնում՝ իմ վազքը ծանր է մենակությունից։ Ես ինձ խաբում էի, թե իմ վազքը բոլորովին էլ ծանր չէ, ես համարյա թե սլանում եմ, քամին համարյա թե աղմկում է իմ ականջների մեջ։ Ես զգում էի, որ տհաճ մի բան է եղել և կարծում էի իմ վազքն ինձ հեռացնում է տհաճ այդ բանից։ Ես ինձ ասում էի՝ արա՛գ, արա՛գ, արա՛գ... ուսուցչուհին քեզ հանձնարարել է, դու գնում ես թեփի... դու ուրիշ հանձնարարություն չունես, քո առաջադրանքը թեփն է, արա՛գ, արա՛գ, արա՛գ... տհաճ մի բան, այո՛, եղել է, բայց արդեն եղել է հեռո՜ւ, հեռո՜ւ, հեռո՜ւ... իսկ ով չի կարողանում՝ թող չվազի։

Ես դանդաղեցի։ Ես դանդաղել էի ետ դառնալու, բայց ես ափսոսացի անցած ճանապարհը և ինձ աասացի, որ դանդաղում եմ զառիվերի պատճառով։

Զառիվերից հետո ճանապարհն իջնում էր. հարկավոր էր միայն չընկնել, և ճանապարհն ինքը իջեցնում էր, բայց իմ վազքը ծանրացավ, ծանրացա՜վ...

...Եվ հիմա կանգ եմ առել ու քեզ պատմում եմ իմ ցավող խղճի պատմությունը։ Անցել է քսանհինգ տարի։ Դատավորը հանցագործին ասում է. «Քո ահա այս ու այս չարագործությունների դեմ դու դատարանից ի՞նչ ես խնդրում՝ մա՞հ, թե՞ քսանհինգ տարվա բանտարկություն»։ Եվ չարագործը մտածում ու ասում է. «Մահ թե քսանհինգ տարվա՞... բայց դրանք նույնն են»։ Ես հանցանք, ո՛չ, չեմ գործել, դատարանում ինձ այդպիսի հարց, ո՛չ, չեն տվել, ես պարզապես ուզում էի ասել, որ քսանհինգ տարին մահվան հավասար ժամանակ է, ամեն ինչ մահացնում, ամեն ինչ մաշում, ամեն ինչ փոխում է. հին խիստ ուսուցչուհին աչքերը կկոցում, նորից է կկոցում ու քեզ ասում է. «Չէ՛, չճանաչեցի... ակնոցս մոտս չէ... ակնոցս կորցրել եմ, ներեցե՛ք, չճանաչեցի»։ Նայում, նայում ու չես հասկանում, թե կանանց մարած այս աչքերի մասին ինչու ես ասել՝ «խաժ աչքերի բույլ»։ Խաժն ուրեմն նրանց աչքերից նայել է միայն մի օր, ապա թռել, գնացել է նայելու հիմա էլ ուրիշ աղջիկների աչքերից։ Ամեն ինչ խամրում է, ամեն ինչ փոխվում է... Չի մեռնում, չի մոռացվում, քո մեջ չի խամրում միայն այն, ինչը որ քեզ հետ քո մանկության ժամանակ է եղել, ինչը որ դու ես արել։ Եվ եթե պատահել է, որ խմբի հետ վազել ես՝ քո մեջ հավիտյան թպրտալու է, թռչունի գիշերային թևահարման պես, ձեր ոտքերի դոփդոփումը— թափ-թափ-թափ-թափ-թափ-թփա-թփա-թփա-թփա... և եթե դու քո ընկերոջը թեփի հետ փոխել ես... այո՛, վազքի քո ընկերոջը փոխել ես թեփի հետ, այսինքն՝ նրան թողել ես չորեքթաթված քո ետևից նայելիս, մի՛ կարծիր, թե ահա այս զառիվերը կանցնես, քո վազքը կհեշտանա ու էլ չես տեսնի նրա շաղված հայացքը։ Ետ չես նայի, բայց քո վազքը կլինի ծանր ու անթև։ Մազութի մեջ թաթախված թռչունի նման՝ քո խիղճը կնվա, կնվա ու չի կարողանա ճախրել։

(Վերջը հաջորդ համարում)

# ԱՆՄՈՌԱՑ ՕՐ

1924 թվականի մայիսի 23-ն է, պարզ, արևոտ օր: Մոսկվայի փողոցներում հնչում են պիոներական երգեր, երեխաների աղմուկ ու թմբուկների դղրդյուն: Մայրաքաղաքի բոլոր կողմերից (Կրասնայա Պրեսնյա, Սոկոլնիկի, Խամովնիկի) դեպի կենտրոնն են շարժվում պատանի պիոներների ջոկատները: Նրանք Կարմիր հրապարակ են շտապում, որ ընդունեն մեծ Լենինի անունը, որ երդում տան կոմունիստական կուսակցությանը՝ Լենինի անմահ պատգամներին հավատարիմ մնալու մասին:

Այդ ուրախալի իրադարձությանը մեծ խանդավառությամբ ու հուզմունքով էին պատրաստվել պիոներներն ու մենք՝ կոմերիտական աշխատողներս, որոնց հանձնարարված էր Կարմիր հրապարակում շքերթ կազմակերպել:

...Պիոներները սովորել էին հանդիսավոր խոստման տեքստը, որ պարզ ու հստակ արտասանեին Կարմիր հրապարակում: Նրանք սովորել էին թմբուկների հարվածների տակ շարքերով քայլել և երգել: Աղջիկ պիոներներից շատերը իրենց և ընկերների համար պիոներական նոր համազգեստներ էին կարել:

Վերջապես եկավ մայիսի 23-ը: Պայմանավորված ժամից շատ ավելի շուտ ջոկատներում խմբվեցին ուրախ, տոնական ու կոկիկ հագնված երեխաներ: Հստակ քայլերով գնում էին նրանք, և մոսկվացիները նայում էին սլացիկ հասակներով երեխաների ժպտացող դեմքերին, կարմիր փողկապներին և հպարտությամբ կրկնում այն ժամանակ դեռևս նոր՝ պիոներներ բառը:

Ժամը երեքը դեռ չկար, բայց Կարմիր հրապարակն արդեն ծայրից-ծայր ծփում էր մանր ու մեծ, աղմկոտ, աշխույժ երեխաներով: Տասնյակ հազարավոր մոսկվացի պիոներներ էին եկել շքերթի: Այդ նույն օրը Մոսկվայում բացվեց բոլշևիկների կուսակցության 13-րդ համագումարը: Պիոներները գիտեին, որ համագումարի պատգամավորները պետք է ընդունեն իրենց շքերթը: Բոլորն անհամբերությամբ ու հուզմունքով հետևում էին Սպասսկու աշտարակի ժամացույցի ոսկյա սլաքներին:

Հրապարակում երևացին համագումարի պատգամավորները: Բարձրաձայն «կեցցեները» բռնեցին ողջ հրապարակը: Դեռ երբեք այն չէր լսել այդքան կենսախինդ ու երջանիկ մանկական ձայներ:

Հանդիսավոր երդումը հնչեց խրոխտ ու համաձույլ: Այն բառ առ բառ արտաբերեցին տասը հազար պատանիներ ու աղջիկներ: Բոլշևիկյան կուսակցության 13-րդ համագումարի պատգամավորները ընդունեցին Մոսկվայի պատանի պիոներների երդումը (հետևել Իլյիչի պատգամներին, կոմերիտմիության հետ պայքարել Լենինի մեծ գործի համար) որպես երդում՝ սովետների ամբողջ երկրի պատանի լենինյանների:

Հանդիսավոր խոստումը տալուց հետո, նվագախումբը նվագեց «Ինտերնացիոնալ»: Փառաբանված սովետական զորավար Միխայիլ Վասիլևիչ Ֆրունզեն պիոներներին հանդիսավոր երթի հրաման է տալիս: Սկսվում է սոցիալիստական երկրի ամենաերիտասարդ սերնդի շքերթը: Ուղիղ շարքերով, խրոխտ քայլերով անցնում են պատանի լենինյանները մեծ առաջնորդի գերեզմանի մոտով՝ նրա առաջ խոնարհելով իրենց դրոշները:

... Արդեն շատ տարիներ են անցել այդ օրվանից և պատանի պիոներները նորանոր գործերով արդարացրել են այդ փառապանծ անունը:

Ահա թե ինչու, երբ մտածում ես նրանց մասին, ովքեր այսօր աճում և աշխատում են պիոներական ջոկատներում, հաստատ գիտես, որ, հետևելով Լենինի պատգամներին՝ պիոներական կազմակերպությունը նրանցից դաստիարակել է հայրերին և ավագ եղբայրներին արժանի փոխարինողներ, կոմունիստական հասարակության ակտիվ կառուցողներ:

Վ. ԶՈՐԻՆ

*Մանկամական խմբերի Մոսկվայի բյուրոյի նախագահ, 20-ական թվականների մանկամի կենտրոնական բյուրոյի նախագահի տեղակալ*

*Ստեղծագործում են դպրոցականները*

# ԳԵՂԵՑԻԿ ՈՒ ՏՊԱՎՈՐԻՉ ԿԵՐՊԱՐՆԵՐ

Մանկական պատկերասրահը նոր անակնկալ մատուցեց իր այցելուներին, ցուցադրելով Երևանի № 78 դպրոցի «Հմուտ ձեռքեր» խմբակի ստեղծած կիրառական արվեստի լավագույն նմուշները:

Խմբակը հիմնադրվել է 13 տարի առաջ: Խմբակի ղեկավար Սաթենիկ Թոփուզյանը սկզբում նրանց հետ միայն տնարարություն էր պարապում: Յոթ տարի անց, փորձեց խմբակի անդամներին ծանոթացնել կերպարներ ստեղծելու արվեստին: Շուտով բոլորն էլ մեծ հաճույքով մասնակցեցին պարապմունքներին և հանդես եկան հետաքրքիր մտահղացումներով:

Կերպարների, պատկերի ու տեսարանների սյուժեները նրանք վերցրել են հեքիաթներից, պատմըվածքներից, թատերգություններից, առասպելներից, ավանդական զրույցներից ու առօրյայից: Իսկ հումքը, որով մարմնավորել են իրենց մտահղացումները, եգիպտացորենի, ծխախոտի թփեր են, սոխի կճեպներ, եղևնու ճյուղեր, մրգերի կորիզներ, ցորենի հասկեր ու ցողուններ, փուշ, տատասկ և այլ նյութեր, որոնք առօրյայում հազվադեպ են օգտագործվում:

Պատկերասրահում ներկայացված լավագույն գործերից էին «Ավարայրի ճակատամարտի» տեսարանը, որը մի մեծ կոճղի վրա պատկերել էր Ալիկ Ջալալյանը, երկվորյակ քույրերի՝ Նարինեի ու Նոնայի «Սոխերի համերգը», «Շունն ու կատվի հար-







«Կիրգիզ երաժիշտներին» պատկերելիս Ռուզաննա Վարդանյանն աշխատել է ազգային կոլորիտ ստեղծել և, ինչպես տեսնում եք, այդ նրան հաջողվել է։

Ծովինար Սահակյանն է պատրաստել «Եգիպտական կերպարները», որոնց զգեստները՝ մետաքսաթելից են։

«Այս «Զամբյուղով տիկինը» պատրաստելիս Գայանե Ստեփանյանը օգտագործել է ցորեն, ավելի ցողուններ ու սոխի կճեպներ։ Իրանը ցողուններով է պատրաստել, իսկ զգեստներն ու գլխարկը՝ կճեպներով։

Լուսանկարները՝ ԶԱՎԵՆ ԲՇՏԻԿՅԱՆԻ

սանիքը» երգիծական տեսարանները և խմբակի մյուս անդամների ստեղծած շատ այլ առանձին կերպարներ ու պատկերներ։

«Հմուտ ձեռքեր» խմբակի անդամների ստեղծած բոլոր կերպարները ու տեսարանները գեղեցիկ ու տպավորիչ էին, և դա էր պատճառը, որ մանկական պատկերասրահում ցուցահանդեսը դեռ չավարտված, մոտ 35 աշխատանքներ Մոսկվա տարան։ Ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսում դպրոցականների աշխատանքները բարձր գնահատվեցին, և ցուցադրված գործերի կեսը մշտական բնակություն հաստատեց ցուցահանդեսի հայկական բաժնում։

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ

# ՈՒՐԵՄ՛Ն Ի՞ՆՉ, ՄԱԳՆԻՍԻ ԶԳՈՂՈՒԹՅԱՆ ՀԱՆԵԼՈՒԿԸ

Օքսֆորդի մայր եկեղեցու վանահայրը ոչ մի կերպ չէր կարողանում հասկանալ, թե իրենից ինչ է ուզում ֆիզիկոս Ֆարադեյը: Իսկ Ֆարադեյը խնդրում էր, որ վանահայրը իրեն տրամադրի եկեղեցու հողմացույցի ձողիկը:

— Ձեր ինչի՞ն է պետք այդ հին ու ժանգոտ ձողիկը: Չէ՞ որ արդեն երեք հարյուր տարի է այն ցցված է եկեղեցու վրա և պահում է հողմացույց-աքլորը:

— Հենց այդ հալից ընկած ձողիկն է ինձ պետք,— ծիծաղելով ասաց Ֆարադեյը և ավելացրեց.— Միայն թե խնդրում եմ զգուշացնեք, որ իջնելիս չփոխեն նրա ուղղաձիգ դիրքը:

Երբ իջեցրին և ուղղաձիգ դիրքով դրին եկեղեցու դռանը, Ֆարադեյը անմիջապես ապացուցեց, որ ձողիկը մագնիսացած է: Իհարկե, այդ ապացուցելը այնքան էլ դժվար չէր. բավական էր, օրինակ, ձողիկին մոտեցնել երկաթի խարտվածք, և ամեն ինչ պարզ կդառնար: Եթե մագնիսա-



ցած է, ուրեմն ունի նաև բևեռներ: Իսկ ինչպե՞ս են բաշխված բևեռները. երբ Ֆարադեյը կողմնացույցը մոտեցրեց ձողիկի ստորին և վերին ծայրերին, պարզվեց, որ առաջինը համապատասխանում է հարավայինին, իսկ երկրորդը՝ հյուսիսային բևեռներին: Այսինքն՝ առաջինը ձգվեց հյուսիսայինի, իսկ երկրորդը հարավային բևեռի կողմից: Ինչ խոսք, Ֆարադեյը նոր գաղտնիքներ չբացահայտեց, նրանից դեռ շատ առաջ Վիլյամ Հիլբերտը արդեն նկատել էր, որ ուղղաձիգ դիրքում գտնվող երկաթյա ձողերը մագնիսանում են: Ընդ որում

---

Սկիզբը՝ №№ 2, 3, 4-ում։

նրանց հարավային և հյուսիսային բևեռները բաշխվում են ճիշտ այնպես, ինչպես Օքսֆորդի մայր տաճարի հողմացույցի ձողիկինը:

Ուրեմն ուղղաձիգ դիրք ունեցող երկաթյա ձողիկները դառնում են արհեստական մագնիսներ:

Արհեստական մագնիսի օրինակ կարող են ծառայել նաև նավաշինարանում կանգնած նավերը, որոնք Երկրագնդի մագնիսական դաշտի հաշվին մագնիսանում են և փաստացի դառնում լողացող հսկա մագնիսներ: Օրինակները շատ են, իսկ եզրակացությունը մեկն է: Երկրագնդի կամ որևէ այլ մագնիսի մագնիսական դաշտում երկարատև գտնվելու դեպքում բոլոր երկաթյա և պողպատյա իրերն ու առարկաները մագնիսանում են:

Այս սկզբունքի վրա է հիմնված որոշ բժիշկների կողմից օգտագործվող մի այնպիսի գործիքի աշխատանքը, որի օգնությամբ մարդու ստամոքսից դուրս են հանվում պատահականորեն կուլ գնացած ասեղներ, քորոցներ և այլ երկաթյա ու պողպատյա առարկաներ: Մագնիսական զոնդ կոչվող այդ գործիքը իջեցվում է հիվանդի ստամոքսը: Զոնդի ընթացքին կարելի է հետևել ռենտգենյան ապարատով: Զոնդի գաղտնիքն այն է, որ նրա երկաթյա ծայրապանակը անհրաժեշտ պահերին է միայն մագնիսանում: Դա կատարվում է ի հաշիվ զոնդի մեջ դրված այն ճկուն պողպատյա միջուկի, որի ծայրը դուրս է հանվում բերանից և անհրաժեշտության դեպքում միացվում հաստատուն մագնիսին. զոնդը մագնիսանում է և դեպի իրեն է ձգում առարկան:

Արհեստական մագնիս կարելի է ստանալ նաև երկաթի կտորները մագնիսական երկաթաքարով միևնույն ուղղությամբ շփելու դեպքում: Հետաքրքիր է, որ այս եղանակով ստացված մագնիսներն ավելի ուժեղ են, քան իրենք՝ մագնիսական երկաթաքարերը:

Արհեստական մագնիսներ պատրաստելու ժամանակ բոլոր երկաթներն ու պողպատները նույն ջանքը չեն պահանջում: Մի կտորի շփման ժամանակ արագ ստացվում է ցանկալի արդյունքը, իսկ մյուս կտորի շփման ժամանակ չնչին մագնիսացում է տեղի ունենում: Լավ մագնիսացած նյութերը, որպես կանոն, հեշտ էլ մագնիսաթափվում են (օրինակ՝ մաքուր երկաթը), իսկ դժվարությամբ մագնիսացած նյութերը (պողպատ) ուժեղ մագնիսացած վիճակում են մնում նույնիսկ այն ժամանակ, երբ հեռացված է արտաքին մագնիսական դաշտը: Առաջին նյութերը սովորաբար կոչվում են «փափուկ», երկրորդը՝ «կոշտ»: Այդ կոշտությունը բացատրվում է մագնիսական դաշտի լարվածությամբ, այն դաշտի, որ ստեղծում է ինքը՝ մագնիսացված նյութը, երբ հեռացված է արտաքին մագնիսական դաշտը:

Անցյալ դարի վերջերին հայտնի դարձավ, որ փոքր քանակությամբ վոլֆրամ ավելացնելու դեպքում արհեստական մագնիսի մագնիսական հատկությունները ավելի են բարելավվում,



իսկ կոբալտ ավելացնելու դեպքում՝ առավել:

1921 թ. արհեստական մագնիսի լավագույն համաձուլվածք ստացան ճապոնացի մետալուրգներ Հոդան և Սասյուն: Նրանց առաջարկած համաձուլ-

# ՀԱՄԱՐԵՆՔ ԼՈՒԾՎԱ՞Ծ...

վածքը պարունակում էր ոչ միայն երկաթ և վոլֆրամ, այլև՝ կոբալտ, քրոմ, ածխածին:

Մինչև հիմա մենք խոսում էինք մագնիսի ձգողության մասին, բայց կան նյութեր, որ մագնիսը վանում է, օրինակ՝ պղինձը: Ճիշտ է, այդ վանողությունը շատ թույլ է, բայց ժամանակակից չափիչ գործիքներով հեշտ է հաստատել:

Թույլ ձգողությունն էր երևի պատճառը, որ մեր նախնիները ինչ-որ ձևով չկարողացան ստեղծել հակամագնիսի տեսությունը:



Այդպիսի նյութերը հիմա կոչվում են դիամագնիսներ, իսկ մագնիսի կողմից ձգվող նյութերը՝ պարամագնիսներ և ֆերոմագնիսներ: Առավել բարձր աստիճանի ձգողական հատկությունը հատուկ է ֆերոմագնիսներին, ինչպես, առաջին հերթին՝ երկաթ, նիկել, կոբալտ եղյակին:

Մագնիսական հատկությունների պատճառը ներկայումս կապում են ատոմի միջուկի շուրջը լիցքավորված էլեկտրոնների պտույտի հետ և բացատրում այսպես. քանի որ լիցքի շարժումը էլեկտրական հոսանքի գոյության պայմանն է, ապա ատոմի միջուկի շուրջը պտտվող (շարժվող) լիցքավորված մասնիկները՝ էլեկտրոնները առաջացնում են էլեկտրական հոսանք, իսկ ցանկացած էլեկտրական հոսանք իր շուրջը ստեղծում է մագնիսական դաշտ: «Եթե այդպես՛ է, ապա բոլոր նյութերը պետք է օժտված լինեին մագնիսական հատկությամբ»,—մտածում է ընթերցողը: Բայց դա այդպես չէ: Քանի որ մագնիսական հատկություններով օժտված նյութերում ատոմների միջուկների շուրջը պտտվող էլեկտրոնները, կոպիտ ասած, պտտվում են միևնույն ուղղությամբ և ստեղծում հզոր գումարային մագնիսական դաշտ, իսկ մագնիսական հատկություններով օժտված նյութերում ատոմի միջուկի շուրջը պտտվող էլեկտրոնները շարժվում են տարբեր ուղղություններով, և արդյունքում ստացվում է այն, որ նրանց ստեղծած մագնիսական դաշտերը իրար փոխադարձաբար կոմպենսացնում են, հավասարակշռում:

Այս դատողությունները, ինչպես, տեսական կռահումներ են և թվում են այնքան համոզեցուցիչ, որ ակամայից նորից հիշում ես հարցերի հարցը՝ իսկապես երկու մագնիսական մարմիններ ինչո՞ւ են իրար ձգում:

Բանն այն է, որ յուրաքանչյուր մարմին կամ մարմինների համակարգ ձգտում է ընդունել այնպիսի դիրք, որի դեպքում նրա էներգիան լինի նվազագույն: Սա հասկանալու համար փորձենք պատասխանել մեկ ուրիշ հարցի. ինչո՞ւ է մարմինը ընկնում Երկրի վրա: Նա ընկնում է որպեսզի ընդունի այնպիսի դիրք, որով նրա էներգիան լինի նվազագույն: Եթե ֆիզիկոսին հարցնեն, թե ինչո՞ւ են քանդվում դարեր առաջ կառուցված վանքերն ու տաճարները, ապա կասի. վանքերի և տաճարների պատերի յուրաքանչյուր քար ձգտում է նվազագույն էներգիայի: Քարի ձգտումը միշտ դա է եղել, բայց շաղախը նրան պահել է: Ի վերջո շաղախի լարվածության ուժերը բնության արհավիրքների ազդեցության տակ թուլացել են և քարը հասել է իր նպատակին՝ ընկել է ցած: Քարը պատին դնելու համար մենք հաղթահարում ենք քարի կշռին հավասար ուժ (Երկրի ձգողության ուժը), պատկերավոր ասած՝ քարի ձգտումը, ուրեմն կատարում ենք աշխատանք, որի հաշվին քարը ձեռք է բերում էներգիա: Իսկ հետագայում, երբ քարը ընկնում է, կորցնում է այդ էներգիան կամ հասցնում նվազագույնի:

Այն, ինչ ասվեց Երկրի կողմից ձգվող մարմինների մասին, նույնը կարելի է ասել մագնիսի և երկաթի կտորի մասին: Ուրեմն ի՞նչ. մագնիսի ձգողության հանելուկը համարենք լուծվա՞ծ: Եթե բացատրությունը ձեզ բավարարում է, համարեք լուծված: Բայց պետք է նշել, որ այդ հանելուկի համոզեցուցիչ լուծումը կապված է տարրական մասնիկների՝ մասնավորապես էլեկտրոնի վարքի լիակատար բացահայտման հետ:

Իսկ էլեկտրոնի վարքը անսպառելի է...

*ԱՐՏԱԿ ՈՍԿԱՆՅԱՆ*

## Տ Ո Ւ Ն

*(Ժողովրդական)*

**Դաշտում մի լավ տեղ ընտրեցի,**
**Երկուշաբթի՝ հիմք փորեցի,**
**Երեքշաբթի՝ քար կտրեցի,**
**Չորեքշաբթի՝ պատ շարեցի,**
**Հինգշաբթի՝ տունը ծածկեցի,**
**Ուրբաթ՝ տանիքը կապեցի,**
**Շաբաթ՝ պատերը ծեփեցի,**
**Կիրակի՝ մեջը քեֆ արեցի:**

*Մշակումը՝ ԿԱՐՈ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆԻ*

*Բնության պահպանությունը այսօր գտնվում է համայն աշխարհի մարդկության ուշադրության կենտրոնում: Մեր ամսագրում այսուհետև դուք պարբերաբար նյութեր կկարդաք այդ մասին: Բաժինը վարելու են կենսաբանական գիտությունների դոկտոր Լևոն Հարությունյանը և գրող Վախթանգ Անանյանը:*

# ԲՆՈՒԹՅՈՒՆԸ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ Է ԽՆԴՐՈՒՄ

Բնությունը մեզ շրջապատող նյութական աշխարհըն է՝ օդը, ջուրը, հողը. անտառները, լայնածավալ դաշտերը, լեռներն ու օվկիանոսները: Հարյուր հազարավոր սերունդներ են ապրել երկրագնդի վրա: Նրանք լավ գործեր շատ են կատարել. մշակել են դաշտերը, ընտելացրել վայրի կենդանիներին և բույսերին. սովորել օգտվել բնության բարիքներից, այն ծառայեցրել մարդու շահերին: Բայց երբեմն էլ հակադրվել են բնությանը՝ կտրատել են անտառները, նպաստել հողերի էրոզիային, ցամաքեցրել գետերը, ոչնչացրել վայրի կենդանիներին ու բույսերին, շռայլել ու սպառել հանքերը, կեղտոտել օդը, ջուրը և այլն: Մարդը մեծ մասամբ բնությունից վերցրել է շատ, նրան վերադարձնելով համարյա ոչինչ: Դրա հետևանքով բնությունը սկսել է աղքատանալ, նվազում են նրա բնական պաշարները:

Այս անհանգստացնում է աշխարհի բոլոր ժողովուրդներին, անկախ պետական կառուցվածքից և քաղաքական համոզմունքներից: Ներկայումս բնության պահպանության հարցերը դուրս են եկել մի կամ մի քանի երկրների սահմաններից և դարձել համաշխարհային մտահոգության առարկա: Որովհետև մի երկրի աղտոտված օդը տեղափոխվելով այլ վայրեր՝ աղտոտում է և հարևան երկրների մթնոլորտը: Թունավոր նյութերով ապականված գետերը մի երկրից հոսելով մյուսը՝ նյութական մեծ վնասներ են պատճառում, կամ էլ թափվելով ծովերն ու օվկիանոսները, ապականում են նաև համաշխարհային ջրերը, ոչնչացնում ձկներն ու ծովային այլ օգտակար կենդանիները:

Ահա թե ինչու բնության պահպանությունը վերջին ժամանակներս դարձել է կարևորագույն խնդիր՝ ինչպես ազգային, այնպես էլ համաշխարհային մասշտաբով: Այն մշտապես քննարկվում է աշխարհի համարյա բոլոր երկրների ղեկավար բարձրագույն օրգաններում: Այնպիսի հեղինակավոր մարմին, ինչպիսին է Միավորված ազգերի կազմակերպությունը, իր Գլխավոր ասամբլեաներում բազմիցս քննարկել է բնության պահպանության հարցերը և ընդունել մի շարք կարևորագույն որոշումներ, որոնց կատարումը պարտադիր է Միավորված ազգերի կազմակերպության անդամ հանդիսացող բոլոր երկրների համար: Այդ հարցերով ավելի հաճախ են զբաղվում ՄԱԿ-ի մասնագիտացված օրգանները, այդ թվում նաև ՅՈՒՆԵՍԿՕ-ն (ՄԱԿ-ին կից լուսավորության, գիտության և մշակույթի հարցերով զբաղվող միջազգային կազմակերպություն): Իսկ Բնության և բնական ռեսուրսների պահպանության միջազգային միությունը դարձել է ՄԱԿ-ի անփոփոխ խորհրդատուն: Միայն վերջին երկու տասնամյակներում հրավիրվել են ավելի քան 400 միջազգային կոնգրեսներ, գիտաժողովներ և սիմպոզիումներ, որոնք քննարկել են բնության պահպանության հետ կապված ամենատարբեր հարցեր:

Բնության պահպանության պետական օրգաններ (դեպարտամենտներ, մինիստրություններ, ազգային կոմիտեներ) կան աշխարհի համարյա բոլոր երկրներում: Ստեղծված են նաև բազմաթիվ գիտա-հետազոտական ինստիտուտներ և լաբորատորիաներ, որոնք ուսումնասիրում են բնության պահպանության և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման խնդիրները:

Սերտ համագործակցություն է հաստատված տարբեր երկրների գիտնականների ու պետական գործիչների միջև, միահամուռ ուժերով բնության պահպանության գործը բարելավելու նպատակով: Արդեն նման համագործակցություն է հաստատված մեր երկրի և ԱՄՆ-ի միջև:

Սովետական Միությունը պատկանում է աշխարհի այն պետությունների թվին, որտեղ բնության պահպանության հարցերը դրված են բարձր մակարդակի վրա: Գոյություն ունեն ինչպես Համառուսաստանյան, այնպես էլ միութենական հանրապետությունների բնության պահպանության ընկերություններ և պետական կոմիտեներ: Մոսկվայում գործում է բնության պահպանության և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման կենտրոնական լաբորատորիան, որն իր մասնաճյուղերն ունի մեր երկրի բոլոր խոշոր կենտրոններում, այդ թվում՝ նաև Երևանում: «Բնության պահպանություն» առարկան դասավանդվում է մեր երկրի համարյա բոլոր բարձրագույն ուսումնական հաստատություններում:

Մեր կուսակցությունը և կառավարությունը մեծ նշանակություն են տալիս բնության պահպանության գործին: ՍՄԿԿ 24-րդ համագումարի որոշումներում կոնկրետ միջոցառումներ են նշված բնության պահպանության և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ուղղությամբ: ՍՍՀՄ Գերագույն սովետի 8-րդ գումարման 4-րդ սեսիան ամբողջովին նվիրված էր բնության պահպանության հարցերին: Հունվարի 10-ին հրապարակվեց ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշումը բնության պահպանությունն ուժեղացնելու և բնական ռեսուրսների օգտագործումը բարելավելու մասին:

Այդ որոշումները մեզ համար լավագույն ուղեցույց են հանդիսանում բնական ռեսուրսների կոմպլեքս, ռացիոնալ օգտագործման, դրանց վերականգնման և վերարտադրության ընդլայնման համար մղվող պայքարում:

Բնական մի շարք գիտությունների զարգացման հսկայական հաջողությունները ցույց են տվել, որ բնության պահպանությունը մարդկանց բարեկեցության բարձրացման հիմնական ուղիներից մեկն է: Մարդը երբեք բնական ռեսուրսների սպառվելուց վախենալու հիմք չի ունենա, եթե մշտապես իր աշխատանքի որոշ մասը ծախսի բնական ռեսուրսների վերականգնման վրա, բնության հարստությունները օգտագործի խելացիորեն:

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Հայաստանի բնության պահպանության ընկերության նախագահության նախագահի տեղակալ*

Օլիմպիական խաղերի հիմնադիր Հերկուլեսը, ըստ պատմիչների, Օլիմպիոսում ինքն էր որոշում վազքի մրցման տարածությունը: Տարածությունը նա չափում էր իր ոտնաթաթերով: Նրա ոտնաթաթի վեց հարյուր անգամ կրկնված տարածությունը հանդիսացել է վազքի հիմնական չափը՝ մրցարանը: Հին հունական մրցարանը անորոշ մեծության է եղել՝ կազմել է մոտավորապես 174—230 մետր: Դա բացատրվում է նրանով, որ յուրաքանչյուր

նշան փոքր մեծությունների հետ են գործ ունենում, բերենք մի քանի օրինակ:

Սպորտային հաղթանակի կամ ռեկորդի ճակատագիրը հաճախ կախված է լինում մի քանի սանտիմետրից, գրամից, վայրկյանի հարյուրերորդ և նույնիսկ հազարերորդ մասերից:

Մեքսիկայի օլիմպիական խաղերում մեր մրճանետորդ Ռոմուալդ Կլիմը ոսկի սահմանագծից ընդամենը 8 սանտիմետրով պակաս նետեց մուրճը և չեմպիոնը դարձավ հունգար Դ. Ժիվոցկին:

թվականին բարելավվեց մեկ տասնորդական վայրկյանով:

1971 թվականի աշնանը Կիրգիզիայի մայրաքաղաք Ֆրունզեում անց էր կացվում ՍՍՀՄ գավաթի համար հեծանվային մրցումներ:

Երկրի չեմպիոնուհի Գալինա Ցարևան հասավ գերազանց արդյունքների՝ 500 մետրը անցավ 37,72 վայրկյանում: Նրա մրցակցուհին՝ Գալինա Երմոլաևան ֆինիշի մոտ կորցրեց ժամանակի մի «նշույլ»՝ 0,04 վայրկյան: Ի դեպ

# ՍՊՈՐՏԸ ՍԿՍՎՈՒՄ Է ՉԱՓՈՒՄՆԵՐԻՑ

քաղաք, որտեղ տեղի են ունեցել մրցումները, ունեցել է իր մրցարանը, իսկ վազքուղու տարածությունը չափվել է այդ քաղաքների գլխավոր քուրմերի ոտնաթաթերով: Եվ ահա անցել են հազարամյակներ ու մարդիկ մոռացել են, որ ինչ-որ ժամանակ տարածությունը չափել են ոտնաթաթերով: Երևան է եկել մետրական սիստեմը: Ի դեպ մրցարան՝ «ստադիա» բառը պահպանվել է բազմաթիվ լեզուներով «ստադիոն» վերափոխությամբ:

Մենք ապրում ենք մեծագույն ճշգրտության դարում: Բացարձակ ճշգրտությունն անհրաժեշտ է ոչ միայն հաստոցների վրա դետալներ մշակելու համար, այլև սպորտային կառույցների շինարարության ժամանակ: Վազքուղին, որ օղակում է ֆուտբոլի դաշտը, պետք է ունենա 400 մետր երկարություն, իսկ լողավազանը 50 կամ 25 մետր: Ոչ մի սանտիմետր ո՛չ ավել, ո՛չ պակաս:

Որպեսզի դուք պատկերացնեք, թե մրցավարները ինչպիսի ան-

Մեկ այլ օրինակ ևս. եռացատկի համաշխարհային ռեկորդը 1909 թվականին կազմում էր 15 մետր 52 սանտիմետր: Անցավ ամբողջ 15 տարի, և ռեկորդը ավելացավ ընդամենը 0,5 սանտիմետրով:

Ի՞նչ է նշանակում վայրկյան, ակնթարթ: Շատերի համար դա հենց արագությունն է: Իսկ մարզիկների համար հավիտենականությունն է: Որպեսզի կոպերդ իջեցնես ու բարձրացնես, ամենաքիչը պետք է քառորդ վայրկյան: Իսկ այդ ընթացքում վազքային մեքենաները սլանում են 20 մետր, հեծանվորդը՝ 5 մետր, սպրինտերը՝ 2,5 մետր: Որպեսզի ռեկորդը բարելավվի գեթ մեկ ակնթարթով, երբեմն անհրաժեշտ է լինում կորցնել տասնյակ տարիներ, մի քանի սերունդների ջանքեր: 1936 թվականին Ջեսսի Օուենսը 100 մետր տարածությունը անցավ 10,2 վայրկյանում և սահմանեց նոր ռեկորդ: Այդ ռեկորդը տևեց երկու տասնամյակ և միայն 1956

այդ «նշույլն» էլ զրկեց նրան ոսկե մեդալից:

Առաջ բազմաթիվ թյուրիմացություններ էին լինում լողի մրցումների ժամանակ, որովհետև մրցավարները այնքան էլ ճիշտ չէին որոշում ժամանակը: Երբեմն պատահում էր, որ մի քանի լողորդներ մրցավարտին էին մոտենում միաժամանակ կամ էլ համարյա միաժամանակ: Վազորդների հարցում դա հեշտ է. դիմում են կինոապարատի օգնությանը: Երբ երևակում են կինոժապավենը, ամեն ինչ պարզ է լինում, երևում է, թե ով է առաջինը կպել ժապավենին: Լողորդների մոտ ավելի դժվար է. ջրի շիթերն ու ալիքները խանգարում են նկատել պայքարը ֆինիշի մոտ: Բայց գիտնականները գտան ելքը: Նրանք ստեղծեցին հատուկ հարմարանք, որը ավտոմատ կերպով արձանագրում է բոլոր ութ լողուղիներում մրցող լողորդների արդյունքները:

Ստարտային ատրճանակի կրակոցը աշխատեցնում է բոլոր ութ վայրկյանաչափերը: Բավական



## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# «ՓԱՅԼԱԿ»-Ը ՓԱՅԼՈՒՄ Է

1967 թվականին, Կիրովականի անհայտ զինվորի հուշարձանի մոտ, տեղի Գրիբոյեդովի անվան № 11 դպրոցի պատանի հայրենասերները երդում տվեցին ու անցան «Փայլակի» շարքերը:

Խումբը մեծ էր: Բաժանեցին վաշտերի, վաշտերը՝ դասակների, դասակները՝ ջոկատների: Պարապմունքները անց էին կացվում շեֆ զորամասի զինվորների օգնությամբ: Մեծ եռանդ դրին գործի մեջ, և արդյունքը եղավ այն, որ հանրապետությունում նվաճեցին առաջին տեղը: Այնուհետև մասնակիցներից ընտրվեցին երեսուն լավագույնները, որոնք պատրաստվում էին համամիութենական մրցումներին: Մրցումները նշանակված էին 1968 թվականի ամռանը, Վլադիվոստոկում:

Կիրովականցի դպրոցականները Վլադիվոստոկում, «Փայլակի» համամիութենական մրցումների բոլոր ձևերի մեջ դարձան առաջատարներ: Վաթսուն խմբի մեջ առաջնություն գրավելը հեշտ չէր: Հաղթանակը ձեռք բերվեց դժվարին ու խիստ պայմաններում:

Ակումբի հաջողությունների մասին դրվատանքի խոսքեր գրվեցին համամիութենական ու տեղական մամուլում:

Հաջորդ տարի՝ 1969 թվականին նրանք կրկին հանրապետությունում գրավեցին առաջին տեղը: Համամիութենական մրցումները նշանակված էին Պսկովում: Այդտեղ ևս լավ դրսևորեցին նրանք իրենց: Ընդհանուր հաշվարկով գտնվում էին առաջատարների մեջ, իսկ սպորտային մրցումներում կրկին բացարձակորեն գլխավորեցին աղյուսակը՝ նվաճելով համամիութենական սպորտային կոմիտեի վիճարկած մրցանակային գավաթը:

...1972 թվականի փետրվարի 22-ին, սովետական բանակի 54-րդ տարեդարձի առթիվ «Փայլակի» նոր միջոցառումներ էին անցկացվում: Դրան մասնակցում էին դպրոցի 570 աշակերտներ, ամբողջ ուսուցչական կոլեկտիվը, ինչպես նաև շեֆ զորամասից սպաներ ու զինվորներ: Դպրոցականներին տրամադրված էին շարժական ռադիոկայաններ, ազդանշանային հրթիռներ, պայթուցիկ նյութեր, ծխագլանիկներ, անգնդակ պարկուճներ և երթային խոհանոց, որը հնարավորություն տվեց երեխաներին հենց դաշտում զինվորական շիլա ուտել:

է մրցավարտին մոտեցող լողորդը կպչի հատուկ թվագրին, որը զգայուն է, կփակվի շղթան, ազդանշան կտրվի և վայրկյանաչափը ավտոմատ կկանգնի: Միաժամանակ լուսային աղյուսակում կվառվի լուսազդանշանը:

Այդպես իմանում են, թե ով է լողորդներից հաղթել և ինչպիսի արդյունքով:

Ժամանակակից տեխնիկան հնարավորություն է տալիս արդեն ռեկորդները գրանցել ոչ միայն վայրկյանի հարյուրերորդական, այլև հազարերորդական մասի ճշտությամբ: Ի դեպ, վերջերս դահուկային սպորտի միջազգային ֆեդերացիան որոշեց գրանցել սրընթաց վայրէջքի, սլալոմի և մեծ սլալոմի արդյունքները՝ հաշվելով նույնիսկ վայրկյանի հազարերորդական մասը:

Մինչև հիմա մենք խոսում էինք սանտիմետրերի և վայրկյանների մասին: Իսկ ինչպե՞ս է գործը ծանրորդների մոտ: Այստեղ, ինչպես գիտեք, վարպետությունը չափվում է բարձրացվող ծանրության կիլոգրամներով:

Քիչ չեն դեպքերը, երբ ռեկորդի և ոսկե մեդալի ճակատագիրը կախված է եղել ոչ թե կիլոգրամներից, այլ ավելորդ գրամներից... ծանրորդի անձնական քաշից:

Մեքսիկայում օլիմպիական խաղերի ժամանակ տեղի ունեցավ այսպիսի դեպք. աշխարհի երկու ամենաուժեղ միջինքաշայիններ Բորիս Սելիցկին և Վլադիմիր Բելյաևը համաշխարհային ռեկորդը՝ 485 կգ, կրկնեցին: Ինչպե՞ս վարվեին. ո՞վ էր հաղթողը: Ստիպված ծանրորդներին կշռեցին: Սելիցկին իր հակառակորդից թեթև էր 300 գրամով: Նրան էլ տվեցին ոս-



«Փայլակի» անդամների մարտունակության ու պատրաստվածության ստուգատեսից հետո, նրանց բաժանեցին երկու խմբերի՝ «Կարմիրների» և «Կապույտների»: Շարժվելով անտառի խոր ձյան միջով, երեխաները քաղաքի հարավ-արևելյան մասում մարտական դիրքեր գրավելով սպասեցին ազդանշանի:

Կարմիր հրթիռների լույսը ազդարարեց մարտի սկիզբը, որից հետո անտառը լցվեց պարկուճների ճարճատյունով, «ռումբերի» պայթյունով ու ծխագլանիկների ծխով: Ջոկատները «ուռա» գոռալով հարձակման անցան անանուն բարձունքը գրավելու համար: Բարձունքի մոտ «թշնամին» գազ էր բաց թողել: Պատանի բանակայինները անմիջապես հակագազ ու պաշտպանական զգեստներ հագան և գրոհով վերցրին բարձունքը:

Ամեն ինչ կատարվում էր զինվորական խիստ կարգապահությամբ ու բոլոր կանոններով: Բարձունքի գրավումը տևեց 4—5 ժամ, և բոլոր մասնակիցները իրենց դրսևորեցին ամուր ու պատրաստված, ինչպես որ հարկն էր, ինչպես որ սպասում էին:

Ճաշից հետո խմբկոլը հասցրեց թողարկել մարտական թերթիկներ, որտեղ լուսաբանված էր խաղի ընթացքն ու պատանի մարտիկների խիզախ գործողությունները:

«Փայլակ» խաղի ավարտից հետո բոլոր մասնակիցները նորից շարվեցին հուշարձան կոթողի մոտ: Պիոներական մի ջոկատ № 11 դպրոցի պատանի մարտիկների անունից պսակ դրեց հուշարձանի պատվանդանին:

Ահա այսպես, ամեն տարի Կիրովականի դպրոցականները հուշարձանի մոտ երդում են տալիս ու համալրում «Փայլակի» շարքերը:

*Վ. ՎՈՐՈԲՅՈՎ*

*դպրոցի զինղեկ*

*Դ. ԳԱՍՊԱՐՅԱՆ*




*Կիրովականի № 11 դպրոցի աշակերտները պարապմունքի ժամանակ։*

կե մեդալն ու օլիմպիական չեմպիոնի կոչումը:

Ահա և մեկ ուրիշ, ավելի հետաքրքիր դեպք. Մելբուռնի օլիմպիական խաղերում ամենաթեթև քաշում հանդիպեցին վաղեմի հակառակորդները՝ ամերիկացի Վինչին և պարսիկ Նամդյուն: Երբ մրցման օրը առավոտյան ծանրորդները կշռվեցին, նրանք սարսափով նկատեցին, որ իրենց քաշը աննշան չափով ավել է սահմանված քաշից, իսկ մրցմանը մնում էր ընդամենը մեկ ժամ: Անհրաժեշտ էր անմիջապես «նիհարել»: Պետք էր միայն տեսնել, թե ինչպես էին ծանրորդները վազում, թռչում, որպեսզի թոթափեին ավելորդ գրամները: Բայց դարձյալ չօգնեց՝ Նամդյուն ուներ 50, իսկ Վինչին 20 ավելորդ գրամ: Նամդյուն որոշեց կտրել մազերը: Դրանից նա շահեց... 7 գրամ: Իսկ ինչպես ազատվել մնացած 43 գրամից: Հուսալքված պարսիկը պպզեց և սկսեց թքել: Նամդյուի օրինակով Վինչին էլ որոշեց հրաժարվել իր ճոխ մազերից: Եվ երբ մրցումից ընդամենը մի քանի րոպե առաջ նրանք նորից կշռվեցին, կշեռքները կարծես խղճացին նրանց, ցույց տվեցին ուղիղ 56 կիլոգրամ:

Սպորտային ինչպիսի մրցումների էլ դուք մասնակցեք, ամենուրեք գործ կունենաք չափումների հետ:

Չափում են ժամանակը, տարածությունը, ծանրությունը, և մրցավարներին այդ գործում շատ են օգնում հուսալի ու ճշգրիտ չափիչ գործիքները:

*ԱԼԵՔՍԱՆԴՐ ՍՎԵՏՈՎ*

*Թարգմ. ԿԱՏՅԱ ՍԱՐՎԱՋՅԱՆԻ*



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԱԽՆԱԴԱՐՅԱՆ ՈՒՂՏԸ



Քսանհինգ տարի առաջ Լենինականի մոտերքից վայրի ուղտի մի ոտք գտնվեց, որով ապացուցվեց, որ հնում ուղտերի խմբեր էին արածում Շիրակի դաշտում: Ներկայիս ուղտի համեմատությամբ Շիրակի ուղտը մի վիթխարի կենդանի էր. դա երևում է նրա սրունքի չափերից:

Դրան հակառակ, փոքրիկ ուղտեր էին բնակվում Սևանի ափին: Նորադուզ գյուղի հանդում վայրի ուղտի ներքին ծնոտ է գտնվել, որը թեև պատկանում է հասակավոր կենդանու, բայց փոքր է, ապացույց այն բանի, որ Սևանի ուղտը մարմնով էլ փոքր է եղել: Գիտնական Յա. Ի. Խավեսոնը հաշվել է, որ այդ ուղտը Սևանի ափին ապրել է ոչ հեռու ժամանակներում՝ սրանից ամենաշատը չորս հազար տարի առաջ:

Այն ժամանակ Սևանա լճի տեղը մի ընդարձակ տափաստան էր, ուր արածում էին նաև վայրի ցուլերի նախիրները: Նրանց ոսկորները նույնպես գտնվել են ուղտի ծնոտի հետ միասին:

Սևանի ուղտերը միասապատ էին: Սակայն ամենից շատ ուղտեր եղել են Արցախի և Փայտակարանի տափաստաններում՝ դաշտային Ղարաբաղում և Մուղանի դաշտում: Դրանք նախահայրերն են այն ուղտերի, որոնք հետագայում ընտելացրին այդ տափաստանների խաշնարած ցեղերը և օգտագործում էին որպես փոխադրական միջոց:

Այդ ուղտերի հետնորդները մինչև օրս էլ պահպանվել են ադրբեջանցի անասնապահների մոտ:

*ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ*

---

## ՆԱԽԱՆՇԱՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*ՆԻՆԱ ՊԱԼԱՄԱՐՉՈՒԿ*

Ժողովրդի մեջ հնուց
Պահպանվել է մի զրույց.
Թե անձրև գա մայիսին,
Ծփշփալով, հորդառատ՝
Բերքի տարի է առատ:

Թե որ սարդը մարտ ամսին
Ոստայն հյուսեց իր համար՝
Լինելու է շոգ ամառ:

Աքաղաղը առվի մեջ,
Թե տեսավ իր պատկերը,
Անձրև չի գա, ինչքան էլ
Վերից գոռան ամպերը...

Ես էլ գիտեմ մի նշան,
Թեկուզ փոքր, աննշան.
Հենց որ քիթը Նունեի
Դարձավ մի քիչ պեպենոտ,
Գարունն արդեն մոտ է, մոտ:

*Թարգմ. Վ. ՍԱՄՎԵԼՅԱՆԻ*

## ՕՏԱՐ ՀՈՂՈՒՄ

*ԳԵՎՈՐԳ ԶԱՐԵՆՑ*

Անցած գարուն հեռու տեղից
Նարինջի ծառ բերեցին ինձ:
Ես այգու մեջ փոս փորեցի,
Տնկեցի ու խնամեցի:
Բայց, շա՜տ ափսոս, ծառը չաճեց,
Հասակ չառավ, չկանաչեց:
Շատ վշտացա ծառի համար,
Իսկ պապս թե՝ մի՛ վշտանա.
Ում հայրենի հողից զրկես,
Կչորանա այս ծառի պես:

## ԽԱՉԲԱՌ
## «ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ»

Ուղղահայաց.—1. «Նոր տաղերգ» պոեմի հեղինակը։ 2. Հռոմեացի կայսր ու բանաստեղծ։ 3. Ֆրանսիացի կատակերգու։ 4. Անգլիացի բանաստեղծ, որը կարողանում էր հայերեն կարդալ ու գրել։ 5. «Կյանքի ծարավը» վեպի հեղինակը։ 6. Հայ գրող։ 10. Ֆրանսիացի գրող, լուսավորիչ։ 13. Ամերիկացի արձակագիր։ 14. «Առաջյալը» վիպակի հերոս։ 16. «Նեսոյի քարաբաղնիսը» պատմվածքի հերոս։ 17. Սովետական գրող, Նոբելյան մրցանակի դափնեկիր։ 22. Ռուս բանաստեղծ։ 23. «Ով է Ռուսիայում լավ ապրում» պոեմի հեղինակը։ 25. Հայ երգիծաբան։ 28. Հայ պատմիչ։ 29. Սովետական բանաստեղծ։ 30. Գրական տերմին։ 32. Գ. Սունդուկյանի օգտագործած կեղծանունը։

Հորիզոնական.—7. Ա. Չեխովի պատմվածքը։ 8. Լ. Տոլստոյի վեպը։ 9. Ժամանակակից սովետական դրամատուրգ։ 11. Մուրացանի դրաման։ 12. Ռուս բանաստեղծ։ 15. Սովետահայ բանաստեղծ։ 18. Գրական ժանր։ 19. Ֆրանսիացի գրող, դետեկտիվ վեպերի հեղինակ։ 20. Էպիգրաֆի հայկական անվանումը։ 21. Արևմտահայ նովելիստ։ 24. «Պատերազմ և խաղաղություն» վեպի հեղինակը։ 26. Ռուս հրապարակախոս և գրող։ 27. Լեռ՝ Հունաստանում, որը, ըստ դիցաբանության, բանաստեղծների հավաքատեղին էր։ 31. «Պրոլոմյան հուշաշուշաններ» գրքի հեղինակը։ 33. Ճապոնացի բանաստեղծ։ 34. Գերմանացի բանաստեղծ։ 35. Ֆրանսիացի վիպասանուհի Ավրորա Դյուդևանի գրական կեղծանունը։ 36. «Սասնա ծռեր» էպոսի հերոս։



Կազմեց ՀԱՄԼԵՏ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

Լույս է տեսնում 1923 թվականից։



# ՊԻՈՆԵՐ

№ 5 մայիս 1978 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: 375200 Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15։

Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։

ՎՖ 06341։ Պատվեր՝ 468։ Տպաքանակ՝ 83400։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 26 IV 1978 թ.։

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մնդպարտի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։

ԳԻՆԸ՝ 10 Կ. ԻՆԴԵՔՍ՝ 77806

# Աշխատանքային վալս

Խոսք՝ ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆԻ

Երաժշտություն՝ ԱՋԱՏ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Tempo di valse

Մենք պա – տա – նի – ներ, ժիր ու ան – վե – հեր,

մեր հո – գում գա – րուն, եր – գում ենք պա –

րում: – քով միշտ հը – գոր: Թող

հա – վերժ հըն – չի եվ մեզ ներ–շըն – չի,

վալ – սը մեր աշ – – խ ժ տա մեզ խինդ եվ

վալ – սը մեր աշ – խույժ տա մեզ խինդ եվ ուժ:

Մենք՝ պատանիներ,
Ժիր ու անվեհեր,
Մեր հոգում՝ գարուն,
Երգում ենք պարում:

Ամեն լավ գործում,
Տանը, դպրոցում,
Մենք՝ առաջավոր,
Կամքով միշտ հզոր:

Կրկներգ.—
Թող հավերժ հնչի
Եվ մեզ ներշնչի,
Վալսը մեր աշխույժ
Տա մեզ խինդ և ուժ:

Տերն ենք մենք արի
Մեր նոր աշխարհի,
Իր նման չքեղ
Չկա ոչ մի տեղ:

Մենք նրան կտանք
Ե՛վ եռանդ, և՛ կյանք,
Մեր սերը պայծառ,
Սիրտը խանդավառ:

Կրկներգ.—Թող հավերժ հնչի...